


Տ. Տ. ՄԱՏԹԷՈՍ ՍՐԲԱԶԱՆ ԿԱԹՈՒՂԻ-
ԿՈՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԲԱՐԻ ՄԱՐԴ ԵՒ
ԲԱՐԻ ՔՐԻՍՏՈՆԵԱՅ ԱՆՈՒՆ ԳՐՔԻՆ ԴԷՄ
ԲՈՂՈՔԱԿԱՆՆԵՐՈՒՆ ՀԱՆԱԾ ՆՈՅՆԱՆՈՒՆ
ԳԸՐՔԻՆ ՎՐԱՅ ՔՆՆՈՒԹԻՒՆ





ԳՐԵԱՑ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊՐՈՒՍԱՑԻ ՏԷՐՈՅԵՆՑ



ՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Կ. ՊՈԼՍՈՅ

Տ. Տ. ՍԱՐԳՍԻ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ



Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

1860

# ՊԱՏՃԷՆ

## Վկայութեան Հոգեւորական Ժողովոյն

Վեհափառ Սրբազան Կաթողիկոսի բարի մ. րր եւ բարի Քրիստոնէից մանկագրեալ գրոյն՛ բողոքականաց կողմէն Ձեր ատենիս պատգրութեամբ հրատարակուած ընդդիմախօսութեանց անկում ու շրջաբերական ըլլալը. Այ-րուանք Յովհաննէս Պատուելին Տէրոյենց օրինաւոր քննութեամբ եւ անկողմնապահ քննադատութեամբ ապացուցանելով շինած գիրքը ներկայացուց Հոգեւոր Ատենիս, եւորեանս յանձնելով արժանահաւատ քննչի, Վերահաստեղե ողջամիտ լինելոյ վաւերականութեան յիշեալ գրենոյն համաձայն ոգւոյ հաւատոյ Հայաստանեայց սուրբ Եկեղեցւոյ. ուստի եւ ժողովս իւր կողմանէ արժան էր դատէ պատգրութեամբ ՚ի լոյս ընծայել.

Արձանագրեալ ժողով. նիստ. Գ.
1860 Յունիս 14

| | | |
|---|---|---|
| Արք եպս՛ | Յովհ՛ վրդ՛ | Ս. Էջմ միաբ՛ |
| Սեբաստիոյ | Սեթեան | Ն՛ Իսահակ վրդ՛ |
| Տէր. Տ. | Ցհն՛ քհնյ | Ն՛ Գեորգ քհնյ |
| Գալուստ | Փափազեան | Խասգիւղի |

Ս. Եռ՛ Եկղ՛ Դրնգոր
Քհնյ Աճէմեան

ԱՌ ՎԵՀԱՓԱՌ ՍՐԲԱԶՆՈՒԹԻՒՆ

# Տ. Տ. ՄԱՏԹԷՈՍԻ

# ԵՐԱՆԵԱԼ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ

# ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ՈՒՂԵՐՁ ՃԱՌԱՑԱԿԱՆ

ճանքին պաշտօնները այսպէս բանի մը համար ձեռքը գրիչ առնելու չէին ներեր. Եւ երբ ստիպուած հայրապետական մը հաւատքին դէմ խօսող ելլէ, ամէն ուղղափառ անձ կրնայ անոր պատասխանել. որովհետեւ իր հաւատքին ալ դպչուած կըլլայ։

Մենք ալ այս խորհրդածութիւնով ներկայ գըրուածոյս ձեռք զարկինք. որուն նպատակն է հակառակորդին չէ՛ թէ անձը զարնելը, որ մեզի անծանօթ է. եւ միայն այն գիտեմք որ օտարազգի մըն է. այլ ըսածները զարնելը։

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

# ԲԱՆԱԳԱՏ



## ԳԼՈՒԽ Ա։

*Բարի մարդ գիրքը Պէպլադեան աղանդ կը պարունակէ՞ մի։*

Այս գրքիս մէջ ուղղագրական աղանդ գտնուիլը կամ չգտնուիլը հասկնալու համար պէտք էր այս աղանդը ինչ ըլլալը գիտնալ. եւ հակառակորդը աղէկ է ըրեր այս հոգը վրան առնելով, "Ուղղագիտոսի վրայ ընդարձակ ծանօթութիւն "չըլլալուն համար հայերէն գրեանց մէջ" (Ընդդիմախ. եր. 12)։ Այդ ատով իր ամբաստանութիւնը շատ ակարացուցեր է. վասն զի սրբազան կաթուղիկոսը հայերենէն զատ լեզու չգիտնալով աղանդն ալ չէր կրնար գիտնալ. եւ խօսածները՝ թէ որ յիրաւի հերետիկոսական էին նէ՝ չգիտնալուն տալով ներելու էր։ Սակայն զինքը ապահովցընելու համար կըսեմ. սրբազան կաթուղիկոսը այս աղանդոյն բաւական տեղեկութիւն ունի. որովհետեւ Պիլուարտի աստուա-

ծառայութեան մէջ որ հայերէն թարգմանուած եւ Վիէննայի մխիթարեաններուն ձեռօքը տըպուած է, աղանդոյս վրայ բաւական տեղեկութիւն կայ։

Հակառակորդը կըսէ թէ Պեղագիոսի գըլխաւոր վարդապետութիւնն էր մարդ 'ի բնէ բարի է ըսելը. որով աստուածային շնորհաց կարօղութիւնը չէր ճանչնար։ Շնորհք մը հա՛րկ է որ աստուծմէ մարդոյս տրուի կըսէր. բայց այդ բառովը վեց կերպ իրարմէ տարբեր բան կը հասկընար (Ընդդիմախ. եր. 14)։ Ռաւքինի հեթանոսներուն համար կըսէր թէ իրենց զօրութեամբը աստուածահաճոյ եղան։ Ուրիշ մոլորութիւններն ալ ասոնց հետեւանքն էին։ Սուրբըն Օգոստինոս այս աղանդոյս գլխահարն եղաւ, որ 412 թուէն կարքեդոնի ժողովքէն 418ին Զօսիմոս Հռոմայ հայրապետէն որ նախորդ տարին աղանդը ընդունէր է եղեր (թէ որ հակառակորդին հաւատացող ըլլայ նէ)*, եւ

* Պեղագեան Կեղեստիոսը իր աղանդը ծածկեց Հռոմ Զօսիմոս հայրապետին առաջը՝ և ուղղափառ ձեւացաւ. եւ հայրապետը զինքն ընդունեց ուղղափառ կարծելով. չէ՛ թէ Պեղագեան աղանդըն ընդունեց։ Հակառակորդը կրնայ Կեղեստիոսի առ Զօսիմոս հայրապետ գրած հաւատոյ դաւանութիւնը սրբոյն Օգոստինոսի [illegible] գիրքին մէջ կարդալ. Գլ. Ե եւ Զ։ Սուրբն Օգոստինոս Պեղագիոսի եւ Կեղեստիոսի ժամանակակից է.

431ին ալ Եփեսոսի տիեզերական ժողովքէն դատապարտեցաւ ։ Ըսել է որ յայտնուելէն մինչեւ վերջին անգամ դատապարտիլը 20 տարիքը չեց ։ Հակառակորդը բաժնները Ուօլշ, Շլէկէլ, Մօսհայմ եւ Նէանտէր անուն գերմանացի պատմիչներէն կառնէ . որոց ամէնն ալ Ներկայ ԺԹ. դարուս մարդիկն են ։ Պեղագիոսին գրչէն ելած գիրք մըն ալ չկայ որուն մէջ վարդապետութիւնը յայտնի ոճով գրած ըլլայ ։

Հակառակորդին տուած տեղեկութիւնը պակասաւոր է . մենք հոս Պեղագիոսի գործակից Կեղեստիոսի բերնէն պիտի սովրինք թէ Պեղագիոս եւ ինքը ի՞նչ կը սովրեցընէին . վասն զի ասիկայ Պեղաղագիոսի գրե՛թէ փաստաբանն ու թարգմանն էր ։ Պաւլինոս Միլանեցի սարկաւագը ասոր ըսածները գլուխ գլուխ ամփոփելով գրի առած եւ Կարքեդոնի ժողովքին առաջը հանած էր . եւ Կեղեստիոսի դիմացը կարդացուեցաւ . որ ասոնք են ։

1. Ադամ մահկանացու ստեղծուեցաւ . եւ թէ՛ մեղանչէր՝ թէ՛ չմեղանչէր՝ պիտի մեռնէր ։

2. Ադամայ մեղքը միայն իրեն վնաս ըրաւ . ընդհանուր մարդկային ազգին բան չըրաւ .

3. Հին օրէնքն ալ Աւետարանին պէս՝ երկնային արքայութեան կ'առաջնորդէր ։

4. Քրիստոսի աշխարհք գալէն առաջ մարդիկ անմեղ էին.

5. Ադամ անկումէն առաջ ի՞նչ վիճակի մէջ էր ինչ՝ նորածին տղաքն ալ նոյն վիճակին մէջն են.

6. Ո՛չ ամէն մարդուն մահը Ադամին օրինազանցութենէն եւ մեռնելէն է, եւ ո՛չ ամենուն յարութիւնը Քրիստոսի յարութենէն է.

Սեղեստիոս անանկ ըսելը խոստովանեցաւ, հաւատոյ չեն դպչիր. փորձապետական բաներ են. ամէն մարդ ուզածը կրնայ ըսել: Բողոքականներն ալ իրենց ծուռ դաւանութիւնը երբեմն այսպէս կը պաշտպանեն: Հակառակորդն ալ Ընդդիմախօսութեան մէջ (եր. 75. 76) սուրբ Աստուածածնի մշտնջենաւոր կուսութեան համար անանկ ըսեր էր:

Սեղեստիոս ետքը դաւանութեան գիր մը տուաւ ժողովքին. որուն մէջ կըսէր թէ տղայք մկրտութեամբ փրկութիւն ընդունելու կարօտ են. բայց մկրտութենէն անոնց մէկ մեղքին թողութիւն գտնելը չէր ընդուներ: Հակառակորդն ալ իր ամէն դաւանակիցներուն բերնէն կըսէ. “ մեր
,, հաւատացածը՝ սուրբ գրոց համեմատ, սա է որ,
,, մէկը չկրնար յաւիտենական կենաց ժառանգորդ
,, ըլլալ մկրտութեան շնորհքովը. եւ թէ՝ փո-
,, խանակ Քրիստոսի մկրտութեան վրայ յոյսեր-

„Նին գնողները՞ չարաչար պիտի զղջային Բյլէր,
„ասէ„ (Ընդդիմախ. եր. 81).

Մէկ մարդ մը Պեղագեան անուանելու համար հա՛րկ է վերագրեալ վեց յօգուած դաւանութիւնը անոր գրուածներուն մէջ գտնել։ Հակառակորդը ասոր վրայ չէ՛ աշխատած. միայն բաւական է սեպեր սա՛ տրամաբանութիւնը։ Պեղագիոս կըսէր թէ ամէն մարդ ՚ի բնէ բարի է։ Տ. Մատթէոս կաթուղիկոսն ալ ըսեր է թէ մարդիկ բնականապէս բարի ստեղծուած են ամենակալ արարչէն յԱստուծոյ Ուրեմն՝ սրբազան կաթուղիկոսն ալ պեղագեան է։ Մենք հակառակորդին վրայ ցուցուցինք Սեղբեստրոս պեղագեանին մկրտութեան վրայօք գրածը. որով մենք ալ իրաւունք կունենանք անիկայ պեղագեան անուանելու։

Իսկ այս այնքան առաւել, որ՝ Պեղագիոսի վրայ յանցանք չէ՛ ձգուած ամէն մարդ ՚ի բնէ, բարի է ըսելը. որովհետեւ երկու կերպ իմացուելու ընդունակ է։ Մէկ մը՝ կը հասկցուի որ մարդս հիմայ ալ իր բնութեանը մէջ Աստուծոյ հաճոյ ըլլալու բարութիւններ ունի. եւ անիկայ ըսելը հերետիկոսական է. որովհետեւ, տակէն՝ ադամական կամ սկզբնական մեղօք մարդկային բնութեան ապականութիւնը եւ չարութիւնը բարութենէն զօրաւոր ըլլալը ուրանալ կըլլէ։ Նաեւ ասկէց կը հասկցուի ըսել թէ Ադամայ մեղքը մինակ իրեն վնաս ըրաւ. Նոր ծնած տղայք

Գ. Վ...

դիկ ամ...

ոտքին․ Գրիգորոսի աշխարհէք գալէն դիկ անմեղ էին․ եւ մկրտութիւնով ց մէկ մեղքի մը թողութիւն չէին գըտ- Ալեքսանդրիայի եւ անոր հետեւողներուն

ընտծներն տանք են։

Երկրորդ խնդիր մըն ալ սա կելլէ, թէ Աստուած պէշ բան չըստեղծեր․ եւ մարդիկ՝ որ հիմայ այնքան գէշցած եւ աւրուած կը տեսնենք, մինչեւ անգամ գէշութիւնը իրենց բնական յատկութիւն կրնայ կարծուիլ, Աստուծմէ բնականապէս բարի ստեղծուած են։ եւ եթէ Ադամայ մեղօքը գէշցած են։ Բայց սակայն բնական լուսոյ օգնութեամբ կը ճանչնան թէ ի՞նչ բանը աղէկ է՝ ի՞նչ բանը գէշ է․ եւ աշխարհական եւ անձնական դիտմամբ, (չէ թէ զԱստուած իրենց բարի գործոյն նպատակ ունենալով) աղէկ գործքեր ալ կրնան ընել։ Ասիկայ ուղղափառ վարդապետութիւն է․ եւ որքաղան Կաթուղիկոսին ալ ըստծն այս ըլլալը նոյն իսկ գործածած բառերէն կը տեսնուի։ Մարդիկ բնականապէս բարի են չըսեր ու անցնիր․ այլ կըսէ թէ ամենակալ արարչէն յԱստուծոյ բնականապէս բարի ստեղծուած են։ Այդ գրքին ընթացքին մէջ ամէն տեղ Աստուծմէ բարի ստեղծուած են ըսելը չհրկներ նէ՝ գրքին սկիզբը ըընելը մինչեւ գրքին վերջը բաւական կը սեպէ։

Տղոց մկրտութեան համար Կեղեստիոսի ըսածին մէջ մէկ մասն ալ որ պարապայ մը կայ․ որկէց կը հետեւի որ պեղապետները մարդիկ ՚ի

քնէ չար ստեղծուած ըսելէն ալ՝ չէին փախչեր , եւ այս ալ հակառակորդին պեղագեանի նմանելու կէտ մըն ալ կաւելցընէ ։ Կեղեստիոս՝ Կարքեդոնի ժողովքին տուած համառօտ դաւանութեանը մէջ կըսէր թէ՝ տղայք մկրտութեամբ փրկութիւն ընդունելու կարօտ են . բայց Ադամայ մեղքն անոնց անցնիլը կամ մկրտութեամբ անոնց մեղքին թողութիւն գտնելը չէր խոստովաներ ։ Ըսէ որ նորածին տղայք մկրտութիւնով փրկութիւն ընդունելու կարօտ են , բայց Ադամայ մեղքն անոնց անցած չէ՛ . եւ իրենք ալ անձնական մեղք չեն կըրնար ունենալ նէ՝ անոնք փրկութենէն զրկողը ի՞նչ կրնայ ըլլալ , որ մկրտութիւնով փրկուելու կարօտ ըլլան ։ Բնականապէս չար ստեղծուած են ըսելէն զատ ճամբայ չկայ . եւ երբ կըսէր որ՝ " Ադամ ,, անկումէն առաջ ինչ վիճակի մէջ էր նէ՝ նորա- ,, ծին տղայքն ալ նոյն վիճակին մէջն են ,, , ըսել կհետեւի թէ նոյն իսկ Ադամ՝ որ Աստուծոյ ձեռքովը ստեղծուեցաւ , չար ստեղծուեցաւ ։ Պեղագիոսի եւ Կեղեստիոսի բացայայտ այսպէս վարդապետութիւն մը ունենալնին պատմուած չէ . բայց իրենց յայտնած վարդապետութեանը օրինաւոր հետեւութիւննէ . որկէց չեն կրնար փախչիլ , երբ ճիշդ տրամաբանեն . եւ այս մոլորութիւնըս ունենան ալ նէ զարմանք չէ՛ . որովհետեւ մի եւ նոյն Կերեստիոսի մէկ օր մը ունեցած հաւատքը միւս օրուան չընդունիլը , եւ քանի՛ պէտք ըլլայ ՞է հաւատոյ դաւանութիւնը պարագաներուն

եւ դիմացի անձերուն յարմարցընելը չտեսնուած բան չէ ։

Բայց թէ որ պեղագեանները ուղղակի այս մոլորութիւնը չունէին նէ՝ անոնք զրպարտած չըլլան ։ Մարդս 'ի բնէ չար ստեղծուած է ըսելը բուն Մանիքեցիներուն եւ Մարկիոնեաններուն վարդապետութիւնն է . որ բարի Աստուծոյ չար բան մը ստեղծելն ալ չվայլեցընելով՝ երկու Աստուած կը դնէին . բարի եւ չար . եւ մարդը չար Աստուծոյ ստեղծուած կըսէին ։ Բողոքականները թէպէտ երկու Աստուած չեն ճանչնար . բայց բուն ծագումին Ալբիգեաններէն ըլլալով ինչպէս իրենք ալ կը խոստովանին, եւ Ալբիգեաններն ալ Մանիքեցիներէն ըլլալը դատաստանական ճամբով ստուգուած ըլլալով , այս բիծը Մանիքեցի աղանդէն քովերնին մնացած կըլլայ ։ Բողոքականներուն ծագմանը վրայ մեր Օծեալ անուն կիսամսեայ պարբերականներուն մէջ խօսած ենք . եւ մանաւանդ Ալբիգեաններուն մէկ ճիւղը ըլլալնուն , եւ անոնց աղանդը ինչ ըլլալուն վրայ (Տե՛ս Օծեալ . Հտր . Գ . եր . 338—345) ։ Սրբազան Կաթուղիկոսն ալ իր Բարէ ժողովգիրքը Մարկիոնեաններուն եւ Մանիքեցիներուն եւ անոնց պէս ըսողներուն դէմ գրած է , ինչպէս որ ինքը կըսէ . (Բարէ ժողով . եր . 1 . 2) ։ Նաեւ Հակառակորդն ալ՝ որ Սրբազանին " Մարդիկ „ բնականապէս բարի ստեղծուած են ամենակալ արարչէն Աստուծոյ „ ըսելը Հերետիկոսու-

թիւն կը սեպէ նէ՝ 'ի Հարկէ ուղղափառութիւն պիտի սեպէ ըսելը թէ՝ մարդիկ բնականապէս չար ստեղծուեցան յԱստուծոյ. որ է բուն Մանիքեցիներուն վարդապետութիւնը. միայն սա՛ տարբեր՝ որ Մանիքեցիները չար բաներ ստեղծելու Համար չար Աստուած մը կայ կը կարծէին. իսկ Հակառակորդը ամենակալ ամենաբարի Աստուածը չարի արարիչ կընէ. եւ այս տարբերութիւնը Հակառակորդին պատիւ մը չըներ.

Ու է որ սրբազանը մարդոյ բնութիւնը ապականեալ ըլլալուն խօսքը չըներ նէ՝ սեպենք թէ իրաւունք ունէր Հակառակորդը անիկայ պեղագեան կարծելու, եւ ըսելու թէ մարդոց բնութիւնը սկզբնական մեղքով աւրուած ըլլալը կուրանայ: Բայց սրբազանը այս ալ ըսած է. եւ այս է աՀա՛ խօսքը. "Մարդս բնութեամբ չար չէ՛ր այլ
" բարի ստեղծուած Աստուծոյ. բայց երբեմն ըզ-
" գայական չար բաղձանաց գաղափարներով կը
" շփոթի եւ կայլայլի եւ կաղօտանայ իմացականու-
" թեան զօրութիւնը ուղիղ եւ ճշմարիտ դատում
" ընելէն. եւ կամքին թոյլտուութիւն կուտայ ըզ-
" գայութեանը տեսած ու բռնած առարկային Հա-
" մեմատ գործելու, որով կըլլայ բնութեամբ բարի
" մարդը իրեն չար գործքովը չար մարդ" (Բանջէ
" Տուրք. եր. 18): Հակառակորդն ալ սրբազանին այս խօսքը տեսեր է եւ կօրինակէ. (Ընդդիմախ, եր. 26. 27). բայց զարմանք է որ ասոր մէջ ալ պեղագեան աղանդ կը տեսնէ:

Աւան չի կըսէ . " ատոր մէջ՝ (սրբազանին
" խօսքին մէջ) պեզազեան մոլորութիւնը յայտ-
" նի է , բայց կուզենք ընթերցողաց ուշադրու-
" թիւնը դարձընել հեղինակին ազատ կամաց
" վարդապետութեանը : Իր աս խօսքին , եւ գըր-
" քին մէջ ասոր համեմատ բազմաթիւ զրոյցնե-
" րուն նայելով՝ կամքը փոխանակ ազատ ըլլալու ,
" գրէ՛ թէ մեքենական հարկաւորութեան ենթա-
" կայ եղած է " (Առ . եր , 27) : Ինէ որ ա-
սոր բացատրութեանը նայիմք նէ՝ սրբազանին այս
խօսքին մէջէն բոլորովին յանհետ եղած է պե-
զազեան մոլորութիւնը : Պեզազեանը մարդոյս ա-
զատ կամացը պաշտպան է , եւ ամենեւին յանձ-
նառու չըլլար ըսելու թէ՝ " կամքը փոխանակ ա-
" զատ ըլլալու , գրէ՛ թէ մեքենական հարկաւո-
" րութեան ենթակայ եղած է " : Ստոյգ ըրկ եւ
ճիշտ անոր վարդապետութիւնն է՝ որ մարդս 'ի բը-
նէ չար ստեղծուած է ըսէ . եւ քիչ մը վերը ը-
սինք որ այս խօսքը յատկապէս մանիքեցիներուն
է . եւ հակառակորդն ալ կուզէր որ՝ սրբազան
Կաթողիկոսը Պեզազեան Ըղանդէն ազատելու
համար անանկ ըսած ըլլար : Բայց մանիքեցինե-
րը մեկ դի ձգեմք . բողոքականներուն նախահայր-
ներուն մէկը՝ Կալվին , մարդոյս ազատ կամքը կապ-
ուած է կըսէ . իր ձեռքը չէ՛ որ բանեցնէ եւ
մարդս գէշ ծառի կընմանցընէ . որ բնականապէս
գէշ ըլլալով 'ի հարկէ գէշ պտուղ կուտայ (Սահ-
մանադրութեանց . Գլ . Բ . Յ . Գ . Բն . 5 . առ Օ-

ռէնի, պատմ. Սուլէնոյ. Հատոր. Ա. Գլ. Ժ. եր. 386. ըստ Ի տպագրութեան)։ Բայց բողոքականները Կալվինին ո՛չ պերճագեան բան ունին, ո՛չ մանիքեցի. այլ եկեղեցւոյ սխալները շիտկելու համար Աստուծոյ գործիք եղած ընտիր մարդ մը կը սեպեն, եւ թէ որ սրբազան Կաթուղիկոսը այս խօսքերս ըսելով յայտնապէս պերճագեան կ'ըլլայ կոր նէ՝ Կալվին ի՞նչպէս եկեղեցւոյ սըխալները շիտկող կ'ըլլայ. եկեղեցւոյ հաւատքը մոլորութիւնով կը շիտկուի՞ արդեօք։ Ու անիրաւ դատաստան կըտրել չէ՞ մի իրարու նման խօսել կարծուած երկու մարդոց մէկը, այն որ յայտնի խօսեր է եւ ըսածը մեկնութիւն չվերցներ. եկեղեցի շիտկելու ընտիր գործիք մը սեպել, եւ միւսը՝ որ տանիկ բան մը յայտնի ըսած չէ՛. Հակառակորդը ըսած խօսքերէն հետեւութեան կերպով կը հանէ, պերճագեան սեպել. (Ընդդիմախ. եր. 27. 80)։ Թէ որ պէտք ըլլայ նէ՝ բողոքականութեան նախահայրերուն գըրածներուն մէջ շատ բաներ կրնամք գտնել. որով մարդոյս ազատ կամքի տէր ըլլալը յայտնապէս ուրացեր՝ եւ մանիքեցիներուն դրութեանը մօտեցեր են։ Ամենուն տեղը բաւական ըլլայ Լուտերի յաղագս ծառայական կամաց խորագրով ճառը. որով ինչպէս անունն ալ կը ցուցընէ, մանիքեցիներուն այս հոգեկործան Աղանդը իր հետեւողներուն ընդունիլ տալ կուզէ։

Բայց ինքը հակառակորդը ի՞նչ կը խօսէր, երբ ուղիղ միտք հասկըցընել ուզէր թէ մա-

կային բնութիւնը ապականուած ըլլալով չարութեան աւելի յօժար է. զգայական բաղձանքը աւելի զօրաւոր են եւ մտաւորական կարողութիւնը կը շփոթեն. Թէ որ ինքնիրեն չկրնար ասոնցմէ ազատիլ ըսէ՝ նէ՝ մանիքեցի աղանդ կ՚ըլլայ. Թէ որ կամք ու ջանք ընէ կրնայ բարի գործ ընել եւ զգայական բաղձանքներէն ազատիլ ըսէ նէ՝ պեղագեան կ՚ըլլայ. Թէ որ անիկայ ուզէ չուզէ Աստուած կամի նէ իր շնորհքովը կազատէ ըսէ նէ՝ դարձեալ ազատ կամքը աստուածային շնորհքէ ստիպուած եւ բռնադատուած ըսել կ՚ըլլայ. Եւ այս ալ Մանիքեցի վարդապետութեան քիչ մը մեղմացածն է. եւ հին բողոքականներուն վարդապետութիւն է։ Հակառակորդը ասոնք կը ճանչնայ. եւ ինքն ալ կը խոստովանի ըսելով. "Կըն-
,, դունինք կամքի ազատութեան վարդապետու-
,, թիւնը իբրեւ ճշմարտութիւն մը որ չկրնար ա-
,, մենափոքր ստիպմունք մը խախտել իր հաս-
,, տատութենէն որ եւ իցէ առարկութեամբ.
,, Միանգամայն մտադրութեամբ աս ալ կը
,, խոստովանինք որ շատ խնդիր կրնայ ծագիլ աս
,, նիւթիս նկատմամբ, որոնց չենք կարող պա-
,, տասխան տալու" (Ընդդէմ. եր. 105)։

Խնդիրներուն դժուարութիւնը մենք ալ կը խոստովանիմք. բայց ինծի կերեւի որ բողոքականներուն չկրնալ լուծելու առարկութիւններուն մէջ կայ որ ուղղափառ աստուածաբանութիւնը կրնայ լուծել։ Եւ անիկայ բացատրեմք. Աղ-

ղափառ քրիստոնեայքս սուրբ Պօղոս Առաքելոյն
պէս կըսենք թէ Աստուած կուզէ որ ամէն մար-
դիկ ապրին եւ ճշմարտութիւնը գիտնալու ժա-
մանեն (Ա. Տիմ. Բ. 4)։ Այս շնորհին Աս-
տուծոյ ազատ եմք Լուտերի ամբարիշտ հայհո-
յութեններէն. որ վերոյիշեալ յղ. ծառայ կամաց գրքին
մէջ ըսած է. "Աստուած մեղաւորին մահը չկա-
„միր՝ խօսքով. բայց կըկամի անքննելի կամ-
„քովը" *. ըսել է որ՝ մեղաւորին մահը չեմ ու-
զեր ըսելը պարապ խօսք մըն է. իսկ Աստուած
ինքը կըկամի. որկէց կըհետեւի որ՝ երբ Աստ-
ուած ես մեղաւորին մահը չեմ ուզեր ըսաւ նէ՝
սուտ է ըսեր։ Հայհոյութիւն մը՝ Աստուած սուտ
կըխօսի ըսելն է նէ, հայհոյութիւն մըն ալ՝
ուզածը չկրնար ըներ ըսելն է. ուստի ուղղա-
փառքս ճիշտ տրամաբանելով կըսենք որ Աստ-
ուած ամէն մարդոց փրկութեան եւ ճշմարտու-
թեան ծանօթ ըլլալուն ճամբան դիւրացուցեր է
իր շնորհքը ամէնուն տալով. ի՞նչ ազգէ եւ ի՞նչ
կրօնքէ կըլլան նէ ըլլան։ Այս շնորհքիս օգնու-
թեամբը թէ որ բնական օրէնքին թելադրած ա-
ղէկութիւնները ընելու ըլլան առանց անձնա-
սիրութեան եւ շահասիրութեան, Աստուած ալ
անոր վարձք՝ շնորհքը կաւելցընէ. եւ այն մար-
դը աւելի բարձրագոյն աստիճանի կըհասցնէ,

* Non vult peccatoris mortem verbo, vult autem eam voluntate illa impreseruttabili.

օգնութիւնը տալով մարդոյս բնութեանը որ բընականապէս բարի ստեղծուած է. վասն զի ամենաբարի Աստուծոյ արարածն է. բայց Ադամայ մեղքովը ծնած ըլլալով աւրուած եւ տկար բընութեան վիճակներ է։ Ու այսպէս ըլլալով Աստուած մարդոյ վրայ իր շնորհքը պսակած կըլլայ երբ որ առաքինի գործքերուն վարձք կուտայ. ինչպէս կըսէ սուրբն Օգոստինոս ։

Ու ասոր օրինակն ալ սուրբ գիրքը կուտայ մեզի։ Կոռնելիոս հարիւրապետը հեթանոս մըն էր. բայց իրեն Աստուծմէ տրուած շնորհքը՝ աղէկ գործածելով՝ հաւատացեալ ըլլալէն եւ մկրտըուելէն առաջ Աստուծոյ հաճոյ եղաւ իր գործքերովը. եւ այս ալ իրեն Աստուծոյ կողմէն եկող հրեշտակը իմացուց. «աղօթքդ ու ողորմութիւններդ յիշատակաւ Աստուծոյ առաջը ելան» ըսաւ (Գործ. Ժ. 4). եւ ասոր վարձք՝ Պետրոս առաքեալէն հաւատք սորվիլն ու մկրտուիլն եղաւ։

Ասոր համար է որ առ հասարակ ամէն մարդոց. եւ անհաւատներուն եւ կռապաշտներուն համար խրատներ կան որ բարի գործքերով զԱստուած իրենց հետ հաշտ պահեն. կամ թէ որ բարկացուցած են նէ՝ հաշտեցընեն գործած մեղքերնէն զղջալով եւ ապաշխարելով։ Այսպէս խրատ տուեցաւ Յովնան մարգարէին բերնովը Նինուէացիներուն. (վասն զի քաղաքներնուն կործանման սպառնալիքը անոնց խրատ էր որ ապաշխարեն, ինչպէս որ իրենք ալ հասկըցան.

ապաշխարեցին եւ պատուհասէն ազատեցան.)։ Դանիէլ մարգարէն ալ Նաբուգոդոնոսոր Թագաւորին խրատ տուաւ. "Քու մեղքերդ ողորմութիւնով, եւ անօրէնութիւններդ ալ տնանկներուն գթալով քաւէ. կըլլայ որ Աստուած քու յանցանքներուդ կը համբերէ" (Դան. Դ. 24)։

Այս ամէն մարդու հասարակաց տրուած շնորհքին կըրնայ մարդ հակառակիլ. անոր ազդումը մտիկ չընել եւ իր մարմնական եւ զգայական յօժարութիւններուն հետեւիլ. եւ ասիկայ ամէն ատեն փորձով տեսածնիս է. եւ այնպէս Աստուծոյ շնորհքը մարդկային ազատ կամաց հետը միաբանելը դիւրին կըլլայ. առարկութիւններուն մէկը, եւ այն ալ՝ դժուարագոյնը, լուծուած կըլլայ։ Բայց բողոքականները ասիկայ չգիտնալով՝ կը վհատին. ոմանք մարդոյս կամքը միայն անունով ազատ, իսկ իրօք ծանր գերութեան մէջ ինկած եւ աղէկ բան մը ընելու անկարող սեպելով մարդ 'ի բնէ չա՛ր է կըսեն՝ եւ մանիքեցւոց մոլորութեան մէջ կիյնան։ Ոմանք մարդըս ինքնիրեն կրնայ աղէկ բաներ ընել, եւ Աստուծոյ շնորհքէն օգնութիւն գտնելու կարօտ չէ՛ կըսեն, պեղագեաններուն մոլորութեան մէջ կիյնան։ Ոմանք ալ՝ ինչպէս մեր հակառակորդը. մարդոյս կամաց ազատութիւնը կը ճանչնան, բարի գործը աստուածային շնորհաց պտուղ ըլլալն ալ գիտեն, բայց շնորհք միայն այն կը ճանչնան՝

որ Հաւատքով քրիստոնեական եկեղեցւոյ անդամ եղողներուն կուսայ Աստուած. անկէց դուրս վի-ճակի մէջ գտնուողներուն Աստուծմէ շնորհք ընդ-ունիլը չեն ճանչնար*ու. Նոյն պնդագեան եւ մանի-քեցի աղանդներէն միապէս հեռու կենալ ուզե-լով դէմերնին ծանր առարկութիւններ կելլէ. որ զերենք այս յիշեալ մոլորութիւններուն մէկին կամ մէկալէն կը մղեն. ինչ ընելիքնին չեն գիտնար. տարակուսած կը մնան. Հակառակորդը ինք վը-կայեց իրեն այս վիճակին մէջ գտնուիլը:

Բայց որպէս զի ինքը մինակ չմնայ այդպէս շուարեալ եւ տարակուսեալ, իրեն ուրիշ ընկեր-ներ ալ կը ցուցընէ. անոնք ալ պատկառելի մար-դիկ: "Թէ՛ Հին եւ թէ Նոր տոմսներու ամենէն
" երեւելի փիլիսոփայք եւ աստուածաբանք ազա-
" տօրէն խոստովանած են իրենց անկարողու-
" թիւնը այդ խնդիրները լուծելու, նոյն ատենը
" առանց փոքր ինչ տարակուսանաց ընդունելով
" մարդկային ազատութեան իրողութիւնը" (Ընդ-դիմախ. էր. 108): Իրեն դժուարալոյծ եղած խնդիրները ինչ ըլլալը չէ՛ ըսեր. ամենէն երե-ւելի փիլիսոփաներն ու աստուածաբաններն ալ ո-րո՛նք ըլլալը չէ՛ յիշեր. աւելի մանաւանդ ինչ խնդիրներու համար ըսելը՝ մէկ հատը հոս օրինակ

* Այս կարծիքը կիսապելագեաններունն է. որ կըսէին թէ՝ մարդ առաջ իր գործքերովը ար-ժանի կըլլայ հաւատքի գալու. և անկէց ետքը Աստուծոյ շնորհքը իրեն կը հասնի.

ցուցընելով բացատրեցինք․ Բայց կը խոստովա-
նինք ալ որ անընդունելի խնդիրներ ալ կան․ եւ կը-
սեմք որ՝ հակառակորդը թէ որ ուրացայն կաթուղի-
կոսին հետ մարդոյս ՚ի բնէ բարի ստեղծուած ըլ-
լալը եւ չարութիւնը ետքէն անոր խառնուած ըլ-
լալը դաւանի, եւ նոյն սրբազանին հետ՝ սրբա-
զան առաքելոյն հետեւելով․ հեթանոսներուն
գործերուն մէջ բարի գործքեր ալ ճանչնայ․ առա-
քինութիւններուն մէկ մասը կընդունայ դիւրաւ լուծել,
ո՛չ մարդոյս կամաց ազատութիւնը ուրանալով․
եւ ո՛չ ալ բարի գործքերուն Աստուծմով ըլլալը։

Բայց մենք ի՞նչ կըսենք։ Հակառակորդը
Արքազան կաթողիկոսին գրքին մէջ այսպիսի բա-
ներն ալ տեսնելով յեղափոխեան աղանդոյ նշան
մըն ալ առնք կըսեպէ ։ Արքազանը կըսէ (Բա-
րէ ծարդ․ եր․ 262), եւ հակառակորդն ալ իր
տետրակին մէջ կօրինակէ (Ընդդիմախօս․ եր․ 30)։
" Այսպէս բնական օրէնքն լուսով զգօնացեալ
" շատ բարի մարդիկ կը գտնուին աշխարհի մէջ․
" (օրինակի համար քանի մի հաւաքինական գործ-
" քեր կը հանէ), ահա՛ ասանկ բնական լաւու-
" թիւն եւ բարեմայն բընաւորութիւն ունեցող-
" ները կանուանին բարի մարդիկ աշխարհի․ որ
" միայն բնական օրինաց առաջնորդութեամբը բա-
" րի վարուց մէջ կը գտնուին"․ եւ ըսածին հաս-
տատութիւն կը ցուցընէ սուրբ առաքեալէն․
(Հռոմ․ Բ․ 14)։ եւ ուրիշ խօսքի կանցնի․ որ
թէպէտ հակառակորդը չէ՛ դըրեր․ կարելի՛ է թէ

Հոս հասածին պէս միտքը եկեր է որ գիրքը պըղտիկ պիտի ըլլայ, շատ երկար մեկնութիւն գրելով մեծցընել պէտք չէ՛։ Սակայն մենք՝ որ բանը լման հասկըցուելուն կը նայինք, գրքին երկայնութեանը կարճութեանը չենք նայիր. այն կտորն ալ հոս կօրինակեմք։ "Այս բնական օրինաց լոյսը ամենակարող արարիչն Աստուած մեր „բնութեանը շնորհեր է. որ ասոր կանոնովը „վարէ մարդս իւր կենացը ընթացքը ուղիղ եւ „անմոլար, մանաւանդ զգուշանայ խօսքի եւ գոր„ծի մէջ չխախտելէ"։ (Նորէ ծոր. եր. 262)։ Ահա՛ հոս սրբազանը յայտնի կը խոստովանի որ այն բնական օրէնքին հետ եղած լոյսը՝ Աստուծոյ շնորհքն է։ Կարծեմ պեղագեան հեղինակ մը այսպիսի բան ըսած չունի. եւ հակառակորդը այս կտորը չօրինակելով չէ՛ թէ միայն գիրքը երկընցընելէն փախեր է. այլ եւ չէ՛ ուզեր որ պեղագեան աղանդոյ սիւտը որ սրբազանին վրայ քըսեր է. անով սրբուի։

Ուզածին չափը առնել եւ բանին չեկածը ետ ձգելէն ետքը կըսէ հակառակորդը. "ասիկայ անանկ ակներեւ վարդ-պետարանութիւն* մըն է „մարդուս բնական միջակին նկատմամբ որ՝ թէ

*Աւելի կարճ եւ աւելի աղէկ հայերէն կըլլար թէ որ ասոր տեղը վարդպետարանութիւն կամ վարդապետութիւն կամ Հոգեհաղորդութիւն դնէր։ Հոս գրած բառը ո՛չ կարճ է. ո՛չ աշխարհաբար. եւ ո՛չ ալ աղէկ գրաբար։

„ Փրիսթլի եւ թէ Չանինք եւ արիոսական, սո-
„ կինեան, միադաւանեան կամ իւնիվէրսէլիսդեան
„ այժմեան աղանդապետներէն ո՛չ ոք աւելի աւե-
„ լի 'կը շաղակրատեն”։ (Նորդէնտուխ․ Եր․ 30)
Մ՝ Էթոդական ըսելուն տեղը վրան եան մասնիկ մըն
ալ աւելցընելը, նոյն պէս իւնիվէրսէլիսդ բա-
ռին ծայրն ալ փակցնելը՝ որ ինքնին իսկ մասնի-
կին ուժովը եան մասնիկը աւելորդ կ'ըլլայ, եւ վի-
ջի վարդապետականութեան բառը, եւ աշխարհաբար
զրուցուածքին անբնական ոճը կը ցուցընեն որ
հակառակորդը հայերէն աղէկ չգիտեր․ ուստի
սրբազան կաթողիկոսին պէս պատկառելի ան-
ձի մը համար շաղակրատել բառը եւ ուրիշ այսպի-
սի անվայել բառեր որ տետրակին մէջ է՛ն աղէկ
կը գտնուին, հակառակորդին կոպտութեան չեմք
տար, հայերէն աղէկ չգիտնալուն կուտամք, որ
աւելի պարկեշտ՝ եւ պատուոյ չդպչելու բառով
կամ զրուցուածքով մը իր միտքը բացատրելու ան-
կարող է գտնուեր։

Հայերէնէն զատ՝ կրօնական գիտութեան ալ
շատ հմուտ չէ՛։ Ներեափկոսութիւնը՝ ուղիղ հա-
ւատքէն կամ յայտնեալ ճշմարտութենէն բան մեր-
ցընելով կ'ըլլայ․ ուստի յիշած աղանդապետները
աղանդաւոր են մը (ինչպէս է Բորէ Տորը՝ որբին հե-
ղինակ սրբազանը) աւելի բան չեն կրնար կրուցել․
միշտ անկեց պակաս կը զրուցեն․ եւ ճիշդ անոր
չափ զրուցեն նէ՝ անոր պէս ուղղափառ եւ սուրբ
առաքելոյն հետեւող կ'ըլլան։ Այսն զի սրբազանն

ալ իրեն բանծներովը բացատրած է սուրբ առաքելոյն սա՛ խօսքը․ «Ուստի հեթանոսները որ „օրէնք չունին՝ երբոր բնականապար օրէնքին „գործքերը որ կը գործեն, անոնք որ օրէնք չու- „նին՝ իրենց անձերնուն օրէնքը բո՛ւն իրենք են․ „որ կը ցուցընեն օրէնքին գործքերը իրենց սիր- „տին մէջ գրուած՝ իրենց խղճմտանքին վկայու- „թեանը» (Հռով. Բ. 14. 15.)։ Առաքելոյն խօսքը սրբազան կաթուղիկոսին ցուցուցածին է․ աշխարհաբարն ալ՝ բողոքականներուն թարգմանածն է։ Հակառակորդը այս վկայութիւնը յայտնի չըներ․ Արիսթոթէլի եւ Զենոնի եւ ուրիշ մոլորեալներուն խօսքերն ալ չըներ որ կարող ըլլայինք դատել թէ սրբազանին խօսքը անոնց բանծին հետ ի՞նչ համեմատութիւն ունի։ Իրաւ թէ որ ճիշդ առոր բանծին պէս է նէ անոնց բանծն ալ՝ այս մասին ուղղափառութեամբ խօսեր են․ վասն զի մեկ մոլորեալ մարդու մը ինչ եւ իցէ ամէն խօսքն ալ մոլորութիւն չըլլար։ Բայց իմքը հակառակորդը սուրբ առաքելոյն խօսքը ինչպէս հասկըցեր է, որ անոր պէս խօսող եւ խօսածը անոր վկայութեամբ հաստատող հայրապետ մը՝ պելագեան կանուանէ․ բայց վկայութեանը համար ալ չըսեր թէ ծածկուած է, կամ [illegible] [illegible] է, ինչպէս որ սրբազանին ուրիշ փաստերուն համար կըսէր։

Սրբազան կաթուղիկոսին գրածներուն մէջ պելագեան աղանդոյ ուրիշ նշան մըն ալ գտեր է

Հակառակորդը, եւ կըսէ. "Նման Պեղագիոսի մեր
" Հեղինակն ալ Սոկրատէսը մէջ կը բերէ իբրեւ ա-
" պացոյց մը թէ ադ (այգ) անձը 'ի բնէ բա-
" րի եղած ըլլայ" (Ընդդէմ. եր. 30). Ա-
սանկ գրուցուածքներուն հերետիկոսութիւն եւ աղանդ
ըս ըսել պէտք ըլլայ նէ՝ աղանդոյն անունն ալ
փոխելու, եւ ուղղափառներուն տեղ դրելու ըսելու է.
վասն զի կը տեսնենք որ Պօղոս առաքեալն ալ նոյն-
պէս կը խօսի: Այն առենը կարելի է որ Հե-
ղինակը սուրբ առաքելոյն անունէն ակնածելով
աղանդ բառն ալ վերցընէ. անոր տեղը հաստատ
դնէ. բայց ատիկայ իր բանն է. կրնայ ալ ը-
սել թէ Պօղոս առաքելոյն վարդապետութիւնը
միւս առաքեալներուն ըսածին հակառակ է, ինչ-
պէս Լութեր, եւ մեր առենները քանի մը Գերմա-
նացի բողոքականներ ըսին. եւ այն առենը անոր
թուղթերը սուրբ գրոց կարգէն դուրս հանել:
Բայց անանկ ալ ըլլայ նէ պեղագեան աղանդը կոչ-
ուիլայ. վասն չի սուրբ առաքելոյս խօսքերովն
է որ պեղագեան աղանդը կը հերքեն աստուա-
ծաբան վարդապետները:

Պօղոս առաքեալը ըսաւ. օրէնք չունեցող
հեթանոսները բնապէս օրէնքի գործքերը կը գոր-
ծեն: Հիմայ թէ որ այս ընդհանուր գրուցուած-
քը մասնաւորել ուզելով Հակառակորդէն մարդ մը
ուզեմ՝ օրինակի համար, որ օրէնքին գործքերը
գործած ըլլայ. 'ի հարկէ ո՛չ հրեայ կրնայ ցու-
ցընել ինծի եւ ո՛չ քրիստոնեայ. վասն զի ասոնք

հեթանոս չէին. Սոկրատը չըլլայ նէ ուրիշ հեթանոս մը պիտի ցուցընէ։ Իր բանը Սոկրատայ անձին համար չէ՛. հեթանոսներուն մէջէն օրէնքի գործք գործող բարի մարդ գտնելու վրայ է։ Ատանկ ըրած է սուրբն Յուստինոս՝ Քրիստոսէ երկրորդ դարուն մէջ. որ կըսէ թէ "բանիւ վարուողները քրիստոնեայ են, (այսինքն՝ քրիստոնէութեան բարոյականի սկզբունքներուն համեմատ կը վարուին). թէ՛ և անաստուած ըսուին. ինչպէս են յունաց մէջ Սոկրատէս և Հերակլիտոս և անոնց նմանները" (Ջատագով. Ա. Գլ. 46). Ա՛ռ քեզի հակառակորդին ըսածին պէս պեղագեան մըն ալ՝ սուրբ Պօղոս առաքելոյն և Տ. Մատթէոս սրբազան կաթողիկոսին դաւանակից, երեքը մէկէն անանկ աղանդի մը բռնուած՝ որ հոգեկործան կանուանէ հակառակորդը. բայց անոնց մէջէն սուրբն Պօղոս և սուրբն Յուստինոս՝ երկուքն ալ ամէն քրիստոնեայ ազգաց մէջ յարգութիւն գտած սուրբ. երրորդն ալ կը յուսամք որ Աստուած իր յատուկ շնորհիւը սրբութեան աստիճանի կը հասցընէ. որովհետև առաջին շնորհքը բաւական աղէկ գործածեց. ճշմարտապէս հոգեկործան մոլորութիւնները ազգէն վերցնելու աշխատելով։

Սոկրատէսը գովելու կողմէն հերետիկոս կըբնտռէ նէ՝ ես ցուցընեմ հակառակորդին. Խող բանայ բաղոքականներուն նախահայրերուն և բա- … սուրբ յիշատակ յարգած մարդերնուն մէկուն՝

Զուինգլիին՝ Հաւատոյ դաւանութեան յայտնէ Քրիստոնէ-Ըէ-ն անունով յօրինած եւ Գաղղիայի Ֆրանսուա Ա. Թագաւորին նուիրած գրքին յառաջաբանութիւնը. որուն մէջ այս Թագաւորիս կըսէ՝ թէ „ որ Աստուծոյ շնորհքովը երկնից արքայութեան „ արժանի ըլլաս, հոն պիտի տեսնես (հին եւ „ նոր օրինաց երեւելի սուրբերուն եւ նոյն իսկ „ Յիսուսի Քրիստոսի ընկերակից եւ աթոռակից) „ Հերակլէսը, Թէզէոսը, Սոկրատը, Արիստի-„ դէսը. Նումա Պոմպիլիոսը, Կատոնները, Սկի-„ պիոնները „. եւ այլն։ Զուինգլիին այդ խօսքին լըմանը դրած եմք մեր Յայսմաւուրք տօնացուցին գրքին մէջ, որ 1845 թուին Իզմիր տպուած է. (եր. 223. Ն. ծան.)։ ուր Արիստիդէսի անուանին տեղը սխալմամբ Արիստոտէլ տպուած է։

Զուինգլին հայ բողոքականներուն շատ անծանօթ չէ։ Մերլ Տ'Օպինեէէն թարգմանուած Զուինգլի անունով 1853ին Կոստանդնուպոլիս տպած տետրակնին այս վերի խօսքը խօսող Զուինգլին պատմութիւնն է։ Բայց ըման պատմութիւնը այն տետրակին մէջ չէ կրցեր սըղմեցունել հեղինակը. եւ դուրս ձգածները պատմածներէն շատ են։ Օրօրինակ. սուրբ հաղորդութիւնը Քրիստոսի մարմին եւ արիւնն ըլլալը ուրացած ատենը Քրիստոսի տեառն մերոյ՝ այս է մարմին իմ, այս է արիւն իմ խօսքերուն իրուցած մեկնութիւնը տալով եւ տպացոյցի նեղը ձգալով տեսիլք տեսնելը, եւ մէկ հրեշտակ մը՝ որուն

ինչ գոյն ըլլալն ալ չէ կրցեր ճանչնալ. պատ-ցայց սովրիլը. Լութերի եւ անոր կուսակիցներուն հետ սուրբ հաղորդութեան խորհրդոյն համար վէճը, եւ թարգմանած գերմաններէն աստուա-ծաշունչին անհարազատութեանը համար Լու-թերէն մերժուիլը. եւ նոյն իսկ այս հաւատոյ բացատրութիւնը Ֆրանսուա Ա. թագաւորին նը-ուիրելը. եւ այլն. Իբրեւ պատմութիւն այն տետրակը անպիտան բան մըն է. բայց սա կը ցուցընէ թէ հիմակուան բողոքականները ինչ աստիճան կը յարգեն ասիկայ: Մէկ տեղ մը անանկ կը ցուցընէ որ մէկէն աստուածային գի-տութեան պինտ վերի ծայրը հասեր է (Միշէ Օտինկլէ. եր. 32), անանկ որ այն գիտու-թիւնը անկէց վեր չկրնար ըլլել: Մէկ ուրիշ տեղ մըն ալ սուրբ անունը կուտայ անոր (եր. 65) եւ արքայութիւն կը խրկէ. 'ի հարկէ հը-ռովմայեցւոց մէջ կուռք պաշտելը սովորութիւն ընող Նումա Պոմպիլիոսի եւ անձնասպան Կա-տոնին եւ աստուածուրաց եպիկուրեան Սկիպի-ոնին եւ մեռնելու ատենը Էսկղեպիոս կուռքին մէկ աքաղաղ մը զոհ ընել ապսպրելէն ետքը մեռնող Սոկրատին եւ ասանց ուրիշ ընկերներուն գացած արքայութիւնը պիտի ըլլայ, ասոր ալ գացածը.

Հիմայ եկուր Օտինկլէին ըսածը սրբազան կաթուղիկոսին բանծին հետ բաղդատէ'. եւ տեսէք ետքը թէ որ բանն մը հասկցար նէ ըսէ

ինչի. Ի՞նչ օրինակ դատած է այն որով Սոկրատը ուրիշ հեթանոսներուն հետ երկնից արքայութեան մէջ տեսան մեր Պլիւտոսի աթոռակից ընող Զուինկլին աստուածային գիտութեանց այնպէս ծայրը հասած սեպուեք. որ անկէ անդին չանցնուի. եւ սուրբ ալ կոչուի, եւ նոյն Սոկրատին համար'' միայն բնական օրինաց կը- ''շխտովը եւ չափովը կենցաղավարէլ եւ աշ- ''խարհիս մէջ բարեկեցիկ ըլլալ կը վարդապե- ''տէր'' ըսող սրբազան կաթուղիկոսը (Տեսէք Ծանօթ. Եր. 264) պեղագեան հոգեկործան աղանդոյն մէջ ինկած եւ ամբարիշտ աղանդապետ մը սեպուեր: Սուրբ գրոց յայտնի խօսքին հակառակը Զուինկլի՞ն է թէ սրբազան կաթուղիկոսը: Եւ թէ որ առոր ըսածներուն համար աղանդապետ անուն վայլեցուցեր են նէ ինչէ՞ն կըլլայ որ Զուինկլին սուրբ կըլլայ:

Սրբազան կաթուղիկոսին Սոկրատը յիշելուն համար իբրեւ բարի մարդոց օրինակ, հակառակորդին նեղանալուն պատճառն այն է, որ ատիկայ քանի մի հին՝ բայց մէջերնին մեծ յարգութիւն գտած բողոքականներուն կը դպչի. բայց չէ՞ մի որ Զուինկլիին նոյնը սրբոց կարգը դասելը առաւել եւս պիտի դպչի անոնց: Սակայն ո՛ր կողմը դարձընենք նէ հակառակորդին զսրբազան կաթուղիկոսը պարսաւելը անիրաւութիւն է: Կալվին ըսեր է. մարդոյս բնութիւնը ապականեալ ըլլալով գործքերը միշտ դատա-

պարտելի են (Սահմանադր. Գլ. Բ). Մելան-քթոն յանուանէ Սոկրատը եւ Քսենոկրատէսը եւ Զենոնը յիշելով՝ ատոնց աղէկ երեւցած գործ-քերը չէ թէ առաքինութիւն, այլ մոլութիւն սեպելու են կըսէ. ըստ աշխարհի բարի գործ սեպելու ալ հրաման չտար. եւ ուղղափառները կը բամբասէ թէ չեն գիտեր որ սկզբնական մեղ-քը մարդոց բարի գործելու համար ըրած ամէն գործքերը եւ ջանքերնին անգամ մեղքի փոխե-լու զօրութիւն ունի. Ասոր վրայ երկար խօսիլ չեմ ուզեր. որովհետեւ հակառակորդն ալ չէ երկընցուցեր. միայն սա կիմացընեմ իրեն որ Կալվինի եւ Մելանքթոնի խօսքերուն կապուե-լով բողոքականութեան մէջ շատ ետ մնացեր է. Եւրոպայի եւ առաւելապէս Գերմանիայի բողո-քականները իրմէ շատ առաջ գացեր են.

Ահա՛ պեղագեան աղանդոյն վրայ. եւ սըր-բազան կաթուղիկոսին պեղագեան ըլլալուն վը-րայ հակառակորդին ունեցած գաղափարները ասոնք են որ տեսանք. Բայց որովհետեւ կրօ-նականը միայն չէ՛՝ ինչ եւ իցէ առարկայ դատաքըն-նելու առնող մարդը տրամաբանելու հըմուտ ըլ-լալու է. մենք հոս ասոր տրամաբանութեանը մէկ օրինակը բերենք, ընթերցողաց զուարճու-թեան համար.

Սրբազան կաթուղիկոսը մարդս բնականա-պէս բարի ստեղծուած է Աստուծմէ ըսածին քա-նի մը վկայութիւններով հաստատութիւն կու-

տայ (Քոլէ Յուրտ. եր. 1). Ասոնց մէկն է սուրբ Պօղոս առաքեալէն առածը. Թէ «ամենայն «արարածք Աստուծոյ բարի են, եւ չիք ինչ «խոտան» (Ա. Տիմոթ. Դ. 4). որով յընդհանրույ ու ժամանակին ըսուած ձեռնարկութիւնը կընէ երկու մասնաւոր բաներու գործածութիւնը աղէկ եւ օրինաւոր ցուցընելու համար. որոց մէկը ամուսնութիւնն է՝ եւ միւսը միս ուտելը: Նու-ըսել կուզէ.

Աստուծոյ ամէն ստեղծածները բարի են.

Ամուսինն ու կերակուր ըլլալու յատկացած բաներն ալ Աստուծոյ ստեղծած են:

Ուրեմն ասոնք ալ բարի են:

Հակառակորդը փաստին ուժը չէ՛ հասկըցեր. կը կարծէ որ՝ բոլորը սուրբ առաքելոյն Ժընեւացին 'ի ձեռակերտ «խօսքին վրայ է. եւ կըսէ. «Պօղոս առաքեալին դիտմունքն է հաստատել «թէ Աստուծոյ ա՛ն (այն) ստեղծուածները «զորս ոմանք արգիլեցին իբրեւ կերակուր գոր- «ծածուելու, բա[illegible] էն ուտելու համար. եւ բա- «րերար արարիչը ստեղծեց զանոնք շնորհակա- «լութեամբ ընդունելու եւ ուտելու համար». Այս գրած սկզբունքովը սուրբ առաքելոյն խօսքը ինք հակառակութեան ձեւ կը խօթէ. որպէս զի այն բարի արարածներուն կարգէն մարդը դուրս ձգէ: Ու ահա այս է անոր ձեռնարկութիւնքը:

Ամենայն արարածք բարի են ՚ի կերակուր։

Մարդն է արարած։

Ուրեմն մարդն բարի է ՚ի կերակուր։ (Ընդդիմախ. եր. 19. 20)։

Դիտես, թէ քաղցէ ստիպուած մարդու մը շէնք է այդ հաւաքաբանութիւնը. որուն աչքին ամէն արարած ուտելու աղէկ երեւցեր են։ Կամ թէ եպիկուրեան հեշտասէր մը ըլլալու է, որ Աստուծոյ արարածներուն մէջ ուտելու բաներէն աղէկ բան չէ տեսեր. գուցէ չուտուելու բաներն ալ Մանիքեցիներուն չար աստուծոյն ըստեղծածն են որ չեն ուտուիր ըսել ուզած ըլլայ։

Բայց թէ որ սուրբ առաքելոյն արարածք Աստուծոյ բարի են ըսելը կերակրոյ նկատմամբ ըլլար նէ՝ ասկէց բնաւ հաւաքաբանութիւն չէր ելլեր։ Վասն զի տրամաբանական գիտութեան օրէնք է, որ երեք նախադասութիւններուն մէջէն ընդհանուրը որ տրամաբանները Մեծագոյն կըսեն եւ հակառակորդին հաւաքաբանութեանը մէջ ամենայն արարածք Աստուծոյ բարի են ՚ի կերակուր խօսքն է, ամենուն ընդունելի եղած ըլլայ. որպէս զի անկէց հանած հետեւութիւնդ դիմացինիդ ընդունելու ստիպես։ Իսկ այս խօսքը թէ Աստուծոյ ամէն արարածները ուտելու աղէկ կուգան՝ բնաւ մէկին ալ ընդունելու բանը չէ. արարածներուն ընդհանուրին նայելով ուտելու բաները չէ թէ ամենայն, այլ քանի ըսել.

անգամ չեն վայլեր։ Իր տարբերը այսպէս բնաւ մէկու մը ընդունելի չեղած խօսքը ի՛նչպէս իբրեւ ընդհանուր կը բանէ. եւ անկէց հետեւ-ւութիւն կը հանէ։

Այս ալ չեմք հասկնար թէ հակառակորդը ինչո՞ւ համար այս ընդհանուր նախադասութիւնը միայն կերակուրի համար մասնաւորե՛ց. ուր առաքելոյն փաստաբանութիւնը երկու տեսակ մոլորութեան մէկէն դէմ է. "որոնք ամուսնանալէն արգիլեն. (այս մէկ). ու ետ պիտի պա-"հեն կերակուրներէն,, մէկն ալ այս։ Ուրեմն պէտք էր հակառակորդին սա՝ հաւաքաբանութիւնը չընել իր հասկըցած կերպովը։

Աստուծոյ ամէն ստեղծուածները կամ ամուսնանալու բարի են՝ կամ կերակուրի։

Մարդը Աստուծոյ ստեղծուածներէն է։

Այս երկու նախադասութիւնները դնէր նէ՝ ինքն ալ մարդը ուտելու աղէկ կուրայ ըսելու ընտրպուելէն աղատ կը մնար, եւ այս հետեւութիւնը կը հանէր։

Ուրեմն մարդը ուտելու աղէկ չըլլար նէ՝ գոնէ ամուսնանալու աղէկ կուգայ։

Նոյն քաղէ ծոցը գրքին դէմ փաստ մըն ալ ելած կը գտնուէր որ եկեղեցականներուն սուրբ կարգ առնելէն ետքը ամուսնանալը օրինաւոր չէ կըսէ. եւ հակառակորդը անոր վրայ երկար կը խօսի ետքը որ պիտի տեսնենք։

Բայց որ կողմը դառնայ հակառակորդը նէ՝ իւրենայն արդարած Աստուծոյ բարի են խօսքը թէ ամենատանալու մասնաւորէ՝ թէ կերակուրի, չըկրնար օրինաւոր հետեւութիւն հանել. անոր համար ալ չկրնար հաստաքաբանութիւն շինել։ Աստուծոյ ամէն արարածները կամ կերակուրի կամ ամուսնութեամբ իրենց տեսակը շատցընելու աղէկ են ըսէ նէ՝ Մանիքեցին կըսէ. ահա անասունները այն տեսակէն են որ իրենց տեսակը պիտի շատցընեն. ուրեմն անոնց միսը ուտելն օրինաւոր չէ՛։ Իսկ թէ որ հակառակորդը հաճի այս խօսքը իբրեւ ընդհանուր նախադասութիւն հասկնալ, (որ մինչեւ հիմայ անանկ հասկցած ըլլալը տեսանք), սրբազան կաթուղիկոսին պէս ըսած կըլլայ. եւ կը հասկնայ որ անոր բերած վկայութեանը մէջ ծաղրելի բան մը չկայ. Իրեն ամենայն արարածները մէկէն եւ առանց խտրութեան ուտելու աղէկ են հասկնալը ծաղրելի է։

# ԳԼՈՒԽ Բ

## Բարի մարդ գրքին կարծեցեալ հերետիկոսութիւնները

Հակառակորդը սրբազան կաթուղիկոսին պեղագեան ըլլալը որպէս թէ հաստատելէն ետքը ուրիշ մոլորութիւն կարծած բաներով ալ կամբաստանէ անիկայ. Կըսէ. Ինքը կը քարոզէ „ կուսին Մարիամայ երկրպագութիւն. սրբոց բարեխօսութիւն. պատկերապաշտութիւն. վերըստին ծնունդ ձեռամբ մկրտութեան. պեղագեան „ հերետիկոսութիւնը իր ամէն ճիւղերովը. (մարդըս մեքենայի պէս բան մըն է կարծելն ալ՝ որ է „ մանիքեցւոց աղանդը, պեղագեաններուն մէկ ճիւղը սեպելով (Ընդդիմախ. եր. 27.) անկանոն „ գրքերը իբրեւ աստուածաշունչ մատեան, եւ „ փրկութիւն ՚ի ձեռն բարեգործութեան՝ եւ այլն „ եւ այլն „: (Ընդդիմախ. եր. 80): Ասոնց վրայ աւելցնելու է նա եւ կարգաւորներուն կարգ անելէն ետքը ամուսնանալուն արգելքն, ու պահք բանելը, որոց վրայ շատ կամ քիչ խօսած է հա-

# ՅՕԴՈՒԱԾ 1

Կուսին Մարիամայ երկրպագութիւն ։

Ասոր վրայ երեք բան կը խօսի Հակառակորդը․ մէկ մը անարատ յղութեան վրայ․ երկրորդ՝ մշտնջենաւոր կուսութեան վրայ․ եւ երրորդ՝ բարեխօս բռնելու վրայ ։ Երրորդը որովհետեւ սըրբոց բարեխօսութեան հետ նոյն է՝ երկրորդ յօդուածին ձգելով այս յօդուածս երկու հատուած կը բաժնենք ։

Ա․ Անարատ յղութեան վրայ։

Հակառակորդը ասոր վրայ կըսէ․ Թէպէտ պապականութիւնը օրէ օր ակարանալու վրայ է, “ բայց կոյս Մարիամին նուիրուած պաշտամուն-
,, քը զարմանալի աճում առաւ ։ Ասիկայ է հիմայ
,, պապականութեան միակ յոյսը․ եւ պապական
,, հաւատոյ մասանց վրայ յաւելցուցին անարատ
,, յղութեան նոր վարդապետութիւնը ։ Մա-
,, թէոս արքեպիսկոպոսը աւետարանին վարդա-
,, պետութեանը դառնալու փոխանակ՝ կուսակցե-

„ցաւ աս Նորոգ վարդապետութեանը„ (Ընդդիմախ. եր. 75)։

Այնպէս ցուցընել կուզէ այս ըսողը. որպէս թէ Հայոց եկեղեցին անարատ յղութեանը չէր հաւատար առաջ. եւ միայն Մատթէոս արք եպիսկոպոսը կը հաւատայ. այն ալ Պիոս Թ. պապին նոյն վարդապետութիւնը 1854ին իբրեւ եկեղեցւոյ հաւատք հրատարակելէն ետքը։ Զգիտեմ այս բանիս վրայ հակառակորդը ի՞նչ խաբուած է, թէ ուրիշնե՞րը խաբել կուզէ.

Հայաստանեայց սուրբ եկեղեցին ամէն ատեն անարատ յղութեան՝ վարդապետութեանը հաւատացած է. եւ սոր ապացոյց է այն՝ որ դեկտ. 9ին սոր տօնախմբութիւնը կը կատարէ։ Սկզբնական մեղօք շաղախելով որդի բարկութեան եւ աստուածային պատուհասի արժանի անձի մը յղութիւնը եկեղեցին չտօներ։ Կրնայ ըսել բողոքականը թէ եկեղեցին սրբոյն Յովհաննու կարապետին յղութիւնն ու ծնունդն ալ կը տօնէ. ուրեմն սուրբ կարապետն ալ սկզբնական մեղքէ ազատ ծնաւ։ Կը պատասխանեմ թէ՝ յղացած ատենը ազատ չէր. բայց ծնանելէն առաջ ազատեցաւ մօրն արգանդին մէջ. երբ որ սուրբ կոյսը այցելութեան գնաց. եւ ողջոյն տուած ժամանակը տղան Եղիսաբէթի արգանդին մէջ նոր շնորհքի մը արժանացածի պէս ցնծալով խաղաց (Ղուկ. Ա. 41. 44)։ Անոր համար Հայոց սուրբ եկեղեցին սուրբ կարապետին ծնունդը

կը տօնէ․ ուրիշ եկեղեցիներ ալ յղութիւնը կը տօնեն նէ նոյնը ըսել է․ վասն զի սորքոյն ըս-կզբնական մեղքէ ազատուիլը յղութեան եւ ծը-նընդեան մէջ տեղ պատահեցաւ ։

Սուրբ կուսին անարատ յղութիւնը եկեղեցւոյ մէջ երգուած շարականներն ալ կիմացընեն, երբ վերափոխման տօնին առաջին օրուան ճաշու շա-րականին՝ որ սուրբ Մովսէս Խորենացիին շի-նածն է Ե դարուն մէջ՝ կերգեն․ « անթառամ » ծաղիկ, [illegible] շուշանիդ ։ » Գեդէոնի տեսած բուրդին կը նմանցընեն․ որ բոլոր աշխարհ աստուածային շնորհաց անձրեւէն ազատ եղած ատենը նոյն շնորհքը վրան իջաւ․ եւ բոլոր տի-եզերք մեղաց գիճութիւնով թրջած ատենը մի-նակ անիկայ չոր մնաց ։ Մովսէս մարգարէին տե-սած մորենիին կը նմանցընեն․ որ կրակի մէջ էր ու չէր այրեր ։

Նոյն հաւատքը հիմնած է սուրբ աւետարա-նին պատմածին վրայ, որ հրեշտակը երբոր սուրբ կուսին աւետիս բերաւ որ բանն Աստուած ան-կէց պիտի մարմնանայ, տակաւին տեառն մերոյ մարմնանալէն առաջ սուրբ կոյսը լի շնորհօք* ա-

* Աւետարանին հայերէն թարգմանութեանը մէջ Բերկրեալ գրած է․ բայց յունական բնագիրը Κεχα-ριτωμένη (քէխարիդօմէնի) լի շնորհօք է ։ Բողոքական-ներն ալ տաճկերէն թարգմանած են՝ [illegible] շնորհօք գտած ։ Լատին թարգմանն ալ նոյնպէս հաս-

նուաննեց եւ թէ որ տէրն մեր տակաւին սուրբ կուսին արգանդը չեկած եւ հոգին սուրբ անոր վրայ չիջած շնորհքով լեցուն էր նէ, ե՞րբ եղած կրնայ այս շնորհաց լեցունութիւնը։ Ահիկայ բողոքականները աղէկ գիտցած պիտի ըլլան, որ կըսեն թէ քանի որ մեղքը կըտիրէր՝ շնորհքը քիչցած էր աշխարհքիս վրայ, եւ Տեառն մերոյ մարդանալոյն ատենն է շնորհաց առատութիւնը։ Ու այս ըսելով մեզի հետ մէկ տեղ սուրբ գրոց կը համաձայնին, որ կըսէ. "ամէ-
"նեքին մեղան, եւ նուաղեալ են 'ի փառացըն
"Աստուծոյ. եւ արդարանան ձրի նորին շնորհօքն
"'ի ձեռն փրկութեան որ 'ի Քրիստոս Յիսուս"
(Հռոմ. Գ. 23. 24)։ Սրբազան կաթուղիկոսըն ալ այս հաւատքը ակիզբէն ունէր, եւ չէ թէ Պիոս Թ. պապէն սորվեցաւ։ Ու կարծեմ հակառակորդին կարծեօքը պէտք էր որ երբ յիշեալ դասը այս վարդապետութիւնը հրատարակեց՝ սրբազանը ուրանալու եւ անոր դէմ բողոք ընելու էր. որպէս զի պապականներուն համա-

կըցած է. որ Gratia plena (կրացիա բլէնա) կըթարգմանէ։ Որով հարկ կըլլայ ըսել թէ՝ մեր թարգմանիչներն ալ Եւրոպացւոց բառը նէ շնորհօք ըսելու մըտքով առած են. որովհետեւ մաքուր բերկրութիւն ալ աստուածային շնորհքով լեցուած սրտի մը յատուկ է. որուն խորհուրդը զինքը տրտմեցընելու բան մը չունի։ Իգնատիոս մեկնիչ վարդապետն ալ այս խօսքը ընկղենական մեղաց նկատմամբ կը մեկնէ։

ձայնած չըլլայ ։ Բայց անիկայ բողոքականներուն յառակութիւնն է. որոյմէ եղան՝ որ պապին հակառակելու համար հոգւոյ անմահութիւնն ալ ուրացան, ինչպէս կը պատմէ Օտէն դաղղիացին. որուն պատմութեան հաւատարմութեանը բողոքականներն ալ կը վկայեն, եւ այս պատմածը 1568ին Ժընեվրա քաղաքը բազմամբոխ դըպրոցի մէջ եղած կըսէ (Պատմութիւն Լութերի. հատոր. Ա. էջ. ԻԲ. առաջին տպագրութիւն) ։ Մենք երբ որ սուրբ եկեղեցւոյ հաստատուն աւանդութեան համաձայն բանի մը բողոքականներուն ալ հաւատալը տեսնեմք՝ չեմք ուրանար ։

Բ. Սուրբ կուսին մշտնջենաւոր կուսութիւնը ։

Հակառակորդը այս նիւթոյս վրայ կըսէ.
" մեր վրայ խօսելով, մենք կը խորհինք թէ Մա-
" րիամին մշտնջենաւոր կուսութիւնը էական-
" պէս հարկաւոր վարդապետութիւն մը չէ մեր
" փրկութեանը ։ Սուրբ գրոց մէջ յայտնուած չէ.
" եւ աստուածաշունչը կանոն հաւատոյ բռնող-
" ները զանիկայ չեն կրնար ընդունիլ իբրեւ
" էական հաւատալիք մը ։ Եւ նկատմամբ անոր
" մարդոցմէ հաւատք պահանջելը, եւ իբրեւ հա-
" ւատալեաց էական մասը քարոզելը ուրիշ Աւե-
" տարան քարոզել է" (Ընդդիմախ. եր. 75. 76) ։

Երկու հարիւր տարիէն աւելի է բողոքականները էական հաւատալիքները ինչ ըլլալը կը

ընտրուէին . այս խօսքերէս կերեւի՝ որ վերջացեալ գտնելու յաջողեր են . եւ անոնց մէջ սուրբ աստուածածնին մշտնջենաւոր կուսութիւնը պարունակած չէ եղեր : Ասոր վրայ զիրենք կը շընորհաւորեմ . միայն թէ գտնուածներուն վրայ ամէն բողոքականները միաբանէին : Այս վարդապետութիւնը իրենց կանոն հաւատոյ բռնած սուրբ գըրքին մէջ գտած չեն եղեր . սուրբ գրքին մէջ գտնուածներուն հետ ի՞նչպէս են . սուրբ կոյս Մարիամը հիմայ աստուածածին ըսելը կընդունի՞ն կոր մի , եւ կանոն հաւատոյ սուրբ գիրքին մէջ պարունակած էական մասն հաւատոյ կը ճանչնա՞ն կոր մի , որ ասկէց առաջ չէին ճանչնար , երբ սուրբ գիրքը կը պատմէ որ սրբոյն Յովհաննու կարապետին մայրը Եղիսաբէթ հոգւով սրբով լեցուելով ըսաւ սուրբ կուսին . "Ուստի " է ինձ այս , զի եկեսցէ մայր Տեառն իմոյ առ իս" (Ղուկ . Ա . 43) : Եւ թէ որ հոս Տէր բառը Աստուած ըսել չեն ճանչնար նէ՝ ի՞նչ մըտքով կը կարծեն որ Եղիսաբէթ իրեն Տէր անուանած ըլլայ տակաւին մօրն արգանդէն չծնած տղայ մը : Ուստի քանի որ սուրբ կուսէն ծնածը Աստուած եւ անոր ծնողը աստուածածին չը ճանչնան նէ՝ սուրբ գիրքը կանոն հաւատոյ բռնողներուն կարգը զիրենք դնելը իրաւ չէ :

Էական կամ գլխաւոր հաւատալիք մենք ալ կը ճանչնամք , այն ալ միայն մէկ հատ մը որ սուրբ առաքեալները սորվեցուցին մեզի եւ ամէն

ուղղափառ հաւատացեալները ընդունեցին. եւ այս է սուրբ եկեղեցիին հաւատալը. «Հաւատամք յեկեղեցի սուրբ». կամ ինչպէս որ Հայաստանեայց սուրբ եկեղեցին սուրբ Լուսաւորչէն սորվելով կը զրուցէ. «Հաւատամք 'ի մի միայն «սուրբ կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցի»։ Միայն ասոր հաւատացողը հաւատալիքներուն ամէնուն ալ կը հաւատայ, թէ եւ ամէն հաւատալիքները մի ըստ միոջէ գիտցած չըլլայ. այս պայմանաւ որ՝ երբ գիտնայ եւ իմանայ որ եկեղեցին այն ինչ բանին կը հաւատայ, ինքն ալ հաւատալու պարտաւոր ճանչնայ։ Եւ ասոնց մէջ կը պարունակի սուրբ աստուածածնին մշտնջենաւոր կուսութիւնն ալ. որուն չհաւատալը սուրբ կոյսը հեթանոս կընիկ մարդոցմէն ալ վար բըռնելով պատիւը կոտրել է, վասն զի հեթանոսներուն մէջ զգաստ կընիկ մարդիկ երբ զաւակ ունենալ եւ մեծցընելէն ետքը էրիկնին մեռներ՝ զիրենք ամուսնութեան նպատակին հասած ճանչնալով որ է որդէծնութիւնը, մէկ մըն ալ չէին կարգուեր։

Եկեղեցին անսխալ ճանչցողները կը պարտաւորին անոր վարդապետածներուն հաւատալու. եւ եկեղեցւոյ անսխալութիւնն ալ մեզի սորվեցընողը եւ ապահովցընողը Տէրն մեր ինքն է. որ սուրբ Հոգին խրկելու խոստացաւ որ յաւիտեան հաւատացելոց հետ բնակի. (չէ՛ թէ միայն առաքեալներուն մէջ՝ մինչեւ անոնց մեռնիլը. չէ՛

նէ՝ Քրիստոս՝ քառսուն յիսուն տարի միայն տեւելու եւ անկէց ետքը անօգնական ձգելու (համար կազմած կըլլար եկեղեցին) . եւ ամէն ճշմարտութիւն եւ ամէն բան ճշմարտութեամբ անոնց սովրեցընէ ։ (Յովհ. ԺԴ. 16. ԺԶ. 13) ։ Այս նիւթոյս վրայ շինած եմ Յայտարար ուղղափառեան գիրքը . որուն մէջ ըսածներունս ամէն ապացոյցները կը գտնուին ։ Աստի՝ եկեղեցիին քարոզածէն զատ աւետարան քարոզելը՝ ուրիշ Աւետարան քարոզել է . չէ՝ թէ բողոքականներուն բռնած ճամբան պակասաւոր գտնելը ։

Սրբազան կաթուղիկոսը սուրբ աստուածածնի մշտնջենաւոր կուսութեանը վրայ խօսած ատենը ըսեր էր թէ՝ « մինչ լր անդրանիկ որդին » ծնաւ խօսքին մէջ մինչեւ բառը կընշանակէ յա- » ւիտենական . մշտնջենաւոր ”։ Այսպէս ըսած ըլլալը Հակառակորդն ալ կը ճանաչէ . (Ընդդիմախ. եր. 76) ։ Եւ ասիկայ հերքելու համար իր հզօր տրամաբանութիւնը ձեռք կառնէ . որով առաքելոյն մէկ խօսքէն որ կաթուղիկոսը իր ըսածին վկայութիւն բերած էր . հետեւցընել ուզեց թէ մարդոյ միսը ուտելու աղէկ կուգայ . ինչպէս որ նախընթաց գլուխին մէջ տեսանք ։

Հոս ալ՝ որպէս թէ սրբազան կաթուղիկոսը յատկացուցած չըլլար թէ մինչեւ բառը այն ինչ խօսքին մէջ (եւ ո՛չ ամէն տեղ) յաւիտենական եւ մշտնջենաւոր կընշանակէ , քանի մը ուրիշ խօսքեր մէջ կը բերէ , որոց մէջ մինչեւը ժա-

ժամանակի սահման կը ցուցընէ. և անոնք ալ յա-ւիտեան թարգմանել կուտայ որբազան կաթուղի-կոսին. ինչո՞ւ համար։ Մինակ գրքին երկու ե-րեսը պարապ խօսքերով լեցունելու. և գիրքը կարդացողներուն աչքին մոխիր փչելու համար։ Երկնած գիրքը համառօտ ընելու համար՝ բերած վկայութիւններու կարեւոր կտորները չգրելուն փոխանակ սանկ տրամաբանութիւններ ըներ նէ աւելի աղէկ կերպը գտած կըլլար կարծեմ խօսե-լու։ Բայց ի՞նչ պիտի ըսես. մարդը փափաքա-նի զինքը չէ թէ միայն աղէկ աստուածաբան, այլ և քաջ տրամաբան ալ ցուցընելու։ Ուրիշ առիթով պիտի տեսնենք ետքը որ եկեղեցական պատմութեան քաջահմուտ երեւելու ալ նոյն փափաքը ունի։

Ըսա թէ ո՛չ՝ ինչպէս որ ինքը որբազանին մին-չև բառը այս ինչ խօսքին մէջ յաւիտեան կը նշանա-կէ ըսելը ջրել ուզեց ուրիշ խօսքեր բերելով որ ժամանակաւոր կը նշանակեն, մենք ալ իրեն ըսածը ջրելու իրաւունքը իրմէ առած կըլլանք ուրիշ վկայութիւններ մէջ բերելով. որ նոյն մին-չև բառը մշտնջենաւոր ըսելու նշանակութեամբ առնուած է։ Սուրբ գիրքը Նոյ նահապետին տա-պանէն թող տուած ագռաւին համար կըսէ թէ մէկ մըն ալ ետ չդարձաւ մինչև գետնին երեսէն ջուրը չցամաքեցաւ (Ծնն. Ը. 7). Որովհե-տեւ հակառակորդը պիտի չկրնայ ըսել թէ անկէց ետքը դարձաւ տապանը մտաւ, արդեօք հրամմեն

կուտա՞յ մեզի որ հետեւցրնեմք թէ՝ մինչեւ Աս-տուծմէ ազդեցութիւն ըլլայ նէ սուրբ Կուսին եւ Յովսէփայ եւ Տեառն մերոյ Եգիպտոս մնալու հրամանը՝ յաւիտեան ըսել ըլլայ ։ Ու սոր հրա-ման չտայ նէ՝ որդեօք Սաղմոսին « ասաց Տէր » ցՏէր իմ նի՛ստ ընդ աջմէ իմմէ, մինչեւ եդից » զթշնամիս քո պատուանդան ոտից քոց » խօսքէն (Ճ՛Թ. 1) ինքը պիտի հետեւցրնէ՞ թէ՝ անկէց ետքը անոր պիտի ըսէ թէ ե՛լ անկէց ։

Ասոր տրամաբանելու կերպէն սա՛ կը հետեւի որ՝ խել մը խօսքեր կան որ մինչեւ բառին յաւերժական նշանակելը սուտ կը հանեն . խել մը խօսքեր ալ կան որ՝ նոյն բառին ժամանակի եւ տեւողութեան սահման մը նշանակելը սուտ կը հանեն . ուրեմն մինչեւ բառը ո՛չ յաւիտենականութիւն կը նշանա-կէ եւ ո՛չ ժամանակի սահման ։ Բայց տրամաբա-նութիւնը՝ որ կըսէ թէ լոկ մասնաւոր նախադա-սութիւնները մինչեւ որ ընդհանուրի կամ եզա-կանի կերպարանք չառնեն նէ հաւաքաբանութեան անդամ չեն կրնար ըլլալ, եւ ասոնցմէ հետեւու-թիւն չելլեր, վերոգրեալ հետեւութիւնը հանե-լու հրաման չտար մեզի ։

Կը մնայ ըսել թէ մինչեւ բառը երբեմն յա-ւիտենականութիւն եւ մշտնջենաւորութիւն կը նշանակէ . եւ երբեմն ժամանակի սահման կը ցուցընէ ։ Բայց այս ինչ տեղը ինչ մտքով առ-նելու ըլլալը ինչէ՞ն հասկընամք . երբ երկունը-շանակութիւնով ալ գործածուած տեղերուն խօս-

տանջքին ձեւը նոյնն է ։ « Սկսաւ Յիսուս առ-« նել եւ ուսուցանել մինչեւ ցօրն» (Գործ. Ա. 1) խօսքին պէս է «ո՛չ դարձաւ ագռաւն մին-« չեւ ցցամաքել ջրոյն» խօսքին մէջն ալ. երկու մինչեւն ալ քովերնին մէկ մէկ տրական ունին ։ Նմանապէս «Նստարուք այդր մինչեւ երթայց « կացից յաղօթս» խօսքին, (Մատթ. ԻԶ. 36) որ ժամանակի սահման կը ցուցընէ. եւ «ոչ « թողցուն ձեզ մեղքդ այդորիկ մինչեւ մեռա-« նիցիք» (Եսայ. ԻԲ. 10) խօսքին որ յաւիտեան կը նշանակէ. որովհետեւ մեռնելէն ետքը մեղաց թողութիւն չըլլար*, կազմութիւնը մի եւ նոյն է. երկուքին ալ մինչեւէն ետքը մէկ մէկ ապառնի բայ կայ ։

Ասանկ երկու իրարու հակառակ կերպով հասկըցուելու խօսքերը որ սուրբ գրոց մէջ կը

* Մեռնելէն ետքը մեղաց թողութիւն չըլլար ըսելնիս ընդհանուր մտքով առնելու չէ՛. ապա թէ ո՛չ եկեղեցւոյ աղօթելը թէ «թող զմեղըս մեր ննջեցելոց», որ ամէն ազգ ունի, պարապ կերթայ. և մենք չեմք կրնար ուրանալ որ կենդանութեան ատենը մէկը սրտանց զղջայ՝ բայց ապաշխարութեամբ զաստուած չհաշտեցուցած մեռնի նէ՝ եկեղեցւոյ աղօթքովը անոր մեղացը թողութիւն կըլլայ, որ՝ քանի՛ որ կենդանի էր նէ թողութիւնը ապաշխարութեամբ գտնելու կը պարտաւորէր ։ Ասոր վրայ ապացոյցներով երկար խօսելու տեղը չէ ։

գանուցին, չիմանալ մտքով հասկընալու ի՞նչ կանոն կուսայ հակառակորդը։ Ոչինչ. վասն զի չկըրնայ պիտի ըսել որ Հոգին սուրբ կարդացողին հոգւոյն մէջ անոր չիմանալ միտքը կազդէ. որովհետեւ այն ատենը պարծենցած կըլլան թէ մենք Հոգւով սրբով կը խօսիմք. եւ այս պարծանքը հակառակորդը չընդունիր, եւ նենգամիտ ստախօսութիւն մըն է կըսէ (Ընդդիմախօս. եր. 41)։ Ուրեմն ի՞նչ կը մնայ. բայց եթէ երկու կողմը հասկցողին ալ իրաւունք տալ։ Սուրբ կուսին մշտնջենաւոր կուսութենէն զատ բաներու վրայ այսպէս երկու կերպ զրուցուածքներ կան։ Տէր մը Քրիստոս կըսէ. " Հայր իմ մեծ է քան զիս". (Յովհ. ԺԴ. 28) ուրիշ տեղ մը կըսէ " Ես " եւ Հայր իմ մի եմք". (Յովհ. Ժ. 30)։ Այս երկու խօսքը որ իրարու հակառակ կերեւին, եւ երկուքին քով ալ ի՛նչ մտքով ըսուածը հասկըցընելու նշան մը չկայ, ի՛նչպէս հասկընալիքը որկէ՞ց սորվելու է։ Մենք կըսեմք թէ ասանկ բաներուն ճշմարիտ իմաստը եկեղեցին կը սորվեցընէ. անոնք ասիկայ ընդունել չուզելով կըսեն թէ ամէն մարդ իր հոգւոյն փրկութեանը համար ինչպէս աղէկ կուգայ նէ անանկ կը հասկընայ. որկէց կը հետեւի որ մէկին հոգւոյն փրըկութեանը՝ Տէրն մեր Յիսուս Քրիստոս Հայր Աստուածէն պզտիկ էր եւ Աստուած չէր ըսելը աղէկ եկած պիտի ըլլայ եղեր. մէկալին Հայր եւ Որդի միայն անունով տարբերեալ մէկ

անձն են ըսելը աղէկ կուգայ եղեր. Երրորդի մը՝ Հայր եւ Որդի կամօք ամէն տեսեն իրարու միաբան են ըսելը, եւ ըստ Մոնոթելիտներու կամաց միութիւն կամ միակամութիւն հասկնալը աղէկ կուգայ եղեր որոց առաջինն ու երկրորդը արիոսականներուն, եւ երկրորդը սաբէլեաններուն մոլորութիւնն է։ Նոյնպէս ուղղափառներուն ալ հոգւոյն փրկութեանը աղէկ կուգայ հաւատալը թէ Քրիստոս Տէրն մեր իբրեւ մարդ մտածելով Հայր Աստուած անկէց մեծ է. իսկ իբրեւ Աստուած մտածելով ըստ ամենայնի Հօր Աստուծոյ հաւասար եւ էութեամբ եւ բնութեամբ անոր հետ մի, եւ միայն անձին տարբերութեամբ որոշուած Աստուած է։ Լսած ունի՞ս. որ ասանկ իրարու հակառակ հաւատք ամէն մէկը իր հաւատացողին աղէկ գայ. Արիոս իր հաւատքովը, Սաբէլ իր հաւատքովը, ուղղափառն ալ իր հաւատքովը ամէնքը միապէս իրենց հոգւոյն փրկութիւնը գտնեն։ Սակայն բաղդատականներուն ըսածին հետեւութիւնը այս է. եւ այս գիտնալով չես զարմանար Զուինկլին վրայ որ Հերակլէսը եւ Պլատոնը եւ Սոկրատը եւ Նումա Պոմպիլիոսը երկնից արքայութեան մէջ Քրիստոսի աթոռակից ըրեր է. վասն զի ասոնք ալ իրենց ժամանակը ինչ բան որ Աստուծմէ կամ աստուածներէն յայտնուած կարծեցին նէ անոր հաւատացին, անկէց ետքը մէկ բան մը միայն կը մնայ ըսել. այսինքն թէ ճշմարիտ հաւատք ք

բողքելու համար առաքեալները Տեառն մերոյ Հրամանովը բոլոր աշխարհք պըտըտեցան եւ ա-նոր համար մեռան նէ՝ պարապ աշխատութիւններ եւ պարապ տեղը արիւն թափել էր։

Տրամաբանական սխալ մըն ալ ունի հակառա-կորդը։ Երբ սըրբազանը իրեն եւ ուղղափառութեան դէմ առարկութիւն մը մէջ բերէ եւ լուծելու ըլ-լայ նէ՝ տուած պատասխանը որ լոկ հերետիկոսի հո-շոտուն կործանոց է, հակառակորդը աստուածոց կը կարծէ. եւ կըսէ. « մինչեւ իր անդրանիկ որդին ծնաւ » խօսքին մէջ մինչեւը յաւիտեան եւ մշտնջենաւոր կը հասկնայ. « որպէս թէ ան խօսքը կապացու-ցանէ անոր մշտնջենաւոր կուսութիւնը » (Ընդ-դիմախ. եր. 76)։ Եւ երբ դարձեալ սրբազանը սուրբ կուսին մշտնջենաւոր կուսութիւնը ուրա-ցողներուն առարկութիւնը մէջ կը բերէ եւ կը հեր-քէ ըսելով որ՝ մէկի մը անդրանիկ ըսուի նէ հարկաւ իրմէ ետքը ուրիշ եղբայրներ ունեցած չհասկըցա-ւիր, ասոր համար հակառակորդը կըսէ. « տար-օրինակ ճամբով կը ջանայ ցուցընել թէ անդրա-նիկ բառէն կը հասկցուի որ Մարիամ ետքը ուրիշ զաւակ չունեցաւ » (անդ, եր. 77)։ Սրբազանը այդպէս յիմարական ջանք չըներ. մի-այն այն կը ցուցընէ. թէ՝ անդրանիկ բառէն չհաս-կըցուիր որ Մարիամ ետքը ուրիշ զաւակ ունե-ցաւ։ Այս երկու զրուցուածքները իրարու հետ նոյն նշանակութիւնը չունին։

Այս 138 երեսէ բաղկացեալ տետրակին մէջ

մինչեւ հոս չորս անգամ ծուռ եւ ծիծաղելի
թարմաբանութիւն տեսանք ։ Առաջին այն որ մա
միսը ուտելու տղէկ գալ հեռեւցուց ։ Երկր
որ սրբազանին մինչեւ բառը այս ինչ խօսքին
այս ինչ նշանակութիւնը ունի ըսելը ջրելու
մար ուրիշ տեղ ուրիշ նշանակութիւն ունենալը
ցուց ։ Երրորդ եւ չորրորդ, որ մինչեւ եւ անդ
բառերը բռնելով եկեղեցւոյ հաւատքին հա
ռակ խօսողներուն կարծիքը Թէտէն՝ ճշմար
թիւն տղացուցանէլ կարծեց ։ Ու ասոնց ամ
ալ ներգործման ընդունական անուան դրաւ. որպէս զի
գացողները ըսեն թէ տեղովս կը խօսի
սխալը ինչ տեսակ ըլլալն ալ գիտէ կոր. ու
Կաթուղիկոսը ճշմարտապէս սխալ թարգմանաբ
է ։ Բայց մեզի անանկ կուգայ որ՝ ներգործման ոչ
բառերը իր ականջին անուշ եկեր է. ուստի
ձախ կը կրկնէ. որպէս զի այն բառերուն
ունեցած սէրը եւ փափաքը յագեցընէ ։ Ըստ
օրինակ թող ըլլայ սա խօսքը ։ " Որպէս
" այս գլուխը երեք իմաստակութիւն կը բով
" դակէ ծայրէ ՚ի ծայր. իմաստակութիւններ
" իրարմէ շատ տարբերութիւն չունին. վա
" առաջինը ներգործման ընդունակ է, եւ երկրորդը
" նոյն ընդունակ է. իսկ երրորդը ներգործման ոչ
է " (Ընդդիմախօս. եր. 78) ։ Արդեօք այս բա
ռը արտասանելէն փափաքը լեցընելու համար ա
իմաստակութիւն հանել. եւ ամենուն ալ նոյն ա
նը տալ ։ Ինչ. մէկ իմաստակութիւն մը չէ

տեղէն երեք հատ գտեր է , տասը հատ գտեր է. քանի մը ըսել չէ. որովհետեւ երեքն ալ անգոյ է, տասն ալ։ Բայց մենք հոս այս նիւթիս վրայ ըսելիքնիս վերջացընելով սիրողաբար խրատ կուտամք հակառակորդին, որ տրամաբանութեան կողմէն բաղդը փափարին չօգներ կոր. իր տրամաբանութիւնը հանդիսացընելը ուրիշ աւելի բարեյաջող առիթներու պահէ.

## ՅՕԴՈՒԱԾ 2

Կուսին Մարիամայ երկրպագութիւն, և սրբոց բարեխօսութիւն։

Ասոնք երկուքը յետագայ խօսքով իրար խառներ է հակառակորդը. մենք ալ անոր համար մէկ յօդուած ըրինք։ Կըսէ. "բայց երբ որ մէկը „կելլէ անկէ կանչնի կոյս Մարիամին միջնոր„դութեանը եւ բարեխօսութեանը, ան (այն) „առեն յայտնապէս եւ ուղղակի կը մաքառի „փրկութեան էական վարդապետութեան մը „դէմ։ Այնպիսին կը մերժէ մեր տիրոջը Յիսու„սի Քրիստոսի միջնորդութիւնը. եւ արարած „ու հունաւոր էակի մը կապաւինի փոխանակ անհաւն փրկչին"։ (Ընդդիմախ. եր. 76)։ Այս-

քան խոշոր. խօսելուն մի՛ հաւատար. վերջը ոչինչ բանի մը պիտի հասնի։ եւ թէ ի՞նչպէս մտիկ ըրէ։

Կը հարցընեմ այդ աստուածաբանին եւ ընկերներուն։ Մ՛էկ մարդ մը մահուամբ աշխարհէ փոխուած սուրբ մը առ Աստուած բարեխօս եւ միջնորդ բռնած առենը իր տիրոջը Յիսուսի Քրիստոսի միակ միջնորդութիւնը կը մերժէ, եւ փոխանակ անհուն փրկչին, արարած եւ հունաւոր էակի մը կապաւինի նէ՝ ինչպէս որ հակառակորդը ըսաւ, կենդանի մարդու մը աղօթքին ինքզինքը յանձնելով եւ անիկայ իրեն համար առ Աստուած միջնորդ բռնելով ի՞նչ ըրած կըլլայ։ Գործը նոյն է. եւ տարբերութիւն մը ունի այլ նէ՝ աւելի կենդանի մարդոց միջնորդութեանը դէմ է։ Անոնք ալ գիտեն որ մարդս քանի որ աշխարհքի մէջ է, կամ մեղաց մէջ է կամ մեղանչելու վտանգի մէջ է. իսկ սուրբերը որ աշխարհքէս ելած են. մեղք ընելու վտանգէն ալ ազատած են։ Արդ՝ արդարոց աղօթքը Աստուծոյ աւելի ընդունելի են. քան թէ մեղաւորներբունը։ Սանկ կըսէ մարգարէն. "զկամս երկիւ-
" ղածաց իւրոց առնէ տէր. աղօթից նոցա լսէ
" եւ կեցուցանէ զնոսա" (Սաղմ. ՃԽԴ. 19)։

Հապա ինչո՞ւ համար Պօղոս առաքեալը հաւատացելոց ապըսպրելով որ ընդհանրապէս ամէն մարդու համար աղօթք ընեն, կըսէ որ անիկայ Աստուծոյ հաճոյ եւ ընդունելի է, եւ իրեն հա

մար ալ աղօթք կը խնդրէ։ (Ա. Տիմ. Բ. 13։ Կող. Դ. 3։ Ա. Թեսաղ. Ե. 25. Բ. Թեսաղ. Գ. 1։ Եբր. ԺԳ. 18)։ Յակոբոս առաքեալը կը պատուիրէ որ իրարու վրայ աղօթք ընեն. որպէս զի բժշկուին (Ե. 16). Եւ առաքեալները ասիկայ 'ի տեառնէ մերմէ սովրեցան. որ ըսաւ. ձեզի նեղութիւն տուող ու հալածողներուն վրայ աղօթք ըրէք (Ղուկ. Զ. 28)։ Հին օրինաց մէջ ալ Յոբայ տեսութիւն ընելու եկողներուն համար ըսաւ Աստուած Եղիփազ Թեմանացին, որ երթան Յոբայ ձեռօքը Աստուծոյ զոհ մատուցանեն. եւ անիկայ իրենց միջնորդ ըլլանեն որ մեղքերնին թողութիւն գտնէ (Յոբ. ԽԲ. 7. 8)։

Նոյն ինքն Աստուած ալ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի միջնորդութեանը վնաս բերել մը չհամարեցաւ երբ առաքեալները մարդոց միջնորդ խրկեց որ իրեն հետ հաշտուին, (Բ. Կորնթ. Ե. 20)։

Արդ՝ ի՞նչպէս կըլլայ որ տակաւին աշխարհքիս մէջ գտնուող մարդիկ ուրիշի կամ ուրիշներու համար առ Աստուած միջնորդ եղած ատենին ապօրինաւոր բան մը չըլլար. իսկ երբ այն հաւատացեալներուն կը դիմեն որ աշխարհքէս ելած եւ Աստուծոյ մօտն են, եւ անոնք առ Աստուած իրենց համար միջնորդ եւ բարեխօս կը ըլլանեն նէ մեղադրելի եւ պարսաւելի կըլլան։ Ի՞նչ նորօրինակ եւ տարօրինակ արտօնութիւնով՝ մարդիկ տակաւին չմեռած՝ արարած եւ անհուն էակ մը կըլլան. որով անոնց միջնորդութեանը իյնողը

Յիսուսի Քրիստոսի միայն միջնորդութիւնը մերժելով իրաւունք ունեցած կըլլայ, որպէս թէ անոր հաստատածները գտած ըլլայ. (մեզի քա՛ւ լեցի ասանկ ըսել. հակառակորդին դրած ծուռ սկզբունքին հետեւութիւնն է ասիկայ): Ու ի՞նչպէս անոնք՝ որ մարմնոյ հետ կապուած էին, այդ արտօնութիւնը ունենալէն ետքը երբ որ հոգինին մարմինէն զատուի եւ Քրիստոսի հետ կըլլան, մէկէն այդ արտօնութիւնը կորսնցընելով արարած եւ հոգեւոր կըլլան, եւ անոնք բարեխօս բռնելը եւ առ Աստուած մեզի համար աղօթելնին խնդրելը՝ անհուն փրկչին միջնորդութեանը կը դպչի. ասիկայ չեմք կրնար հասկընալ:

Ու երբ կըսեն որ՝ մեր միտքը կենդանի մարդոց կրնանք հաղորդել, իսկ մեռածները չեն իմանար թէ խօսքերնիս իրենց է, եւ զիրենք մեզի համար առ Աստուած բարեխօս կը բռնեմք. վրանին չե՞ս մի խնդար. եւ չե՞ս մի ըսեր որ, վերջապէս ատոր գլուխ կապելու բանի մը համար այդքան ճամարտակելը եւ անհուն. եւ հոգեւոր էակ եւ Տեառն մերոյ միակ միջնորդութիւն մէջ բերելն ի՞նչ ըսել էր: Սեպենք թէ սուրբերուն մէկը անանկ վիճակի մէջ գտնուեցաւ որ զինքը բարեխօս բռնողին աղաչանքը լսեց. այն աղօթքը ընողն ալ իր սիրելին է եւ անոր խնդիրքը կատարելու կըլլայ. ի՞նչ կըսէ. նոյն րոպէին այն սուրբը արարած եւ հոգեւոր էակ ըլլալը ձգելով անհուն եւ անստեղծ էա՞կ կըլլայ.

Ինչ որ ըսեն թէ այն սուրբը Աստուծոյ կամքը գիտէ՝ որ բարեխօսութիւնը չընդունիր. անոր համար զինքը բարեխօս ընողին խնդիրը մտիկ չըներ եւ բարեխօս չըլլար, կը հարցընեմ. ինչէ՞ն գիտեն որ այս աշխարհքի մէջ եղողներէն հրամայած բանին՝ որ է ուրիշի համար աղօթելը, հակառակ կամք մը ունենայ վախճանեալ սրբոց նկատմամբ.

Այսքանովս բաւական կը հասկըցուի որ ըրած առարկութիւնը չնչին եւ անտեղի է. եւ խօշոր խօշոր բառերով շինել շինածնին՝ աչքը խաբելու համար է:

Սրբոց բարեխօսութեան վրայ աւելի ընդարձակ տեղեկութիւն ուզողը կրնայ յաղագս բարեխօսութեան սրբոց ընչխարս եւ ղաղափարս նոյն մեծարելոյ խորագրով Հ. Գարեգին Սահակեան վարդապետին շինած՝ եւ 1852 ին Վենետիկ տպած ճառը կարդալ.

# ՅՕԴՈՒԱԾ 3

## Պատկերապաշտութիւն

Այս բանը եկեղեցական մատենագիրներուն մէկին ալ ո՛չ գրչէն ելեր է՝ ո՛չ բերնէն. բողոքականներն են անիկայ հնարողը. որպէս զի իրենց հետեւողներուն կըլլեցընեն թէ հաւատացելոց եկեղեցին պատկերները կը պաշտէ. ինչպէս որ կռապաշտները իրենց կուռքը կը պաշտեն։ Շատ անգամ ասոր համար գրուած եւ ըզրուցուած է որ հաւատացեալները պատկեր չեն պաշտեր. անով անոր բունը միտք կը բերեն, եւ անոնց յարգական յիշատակ մը կընեն. վասն զի գիտեն որ Աստուծմէ փառաւորուած մարդիկը յարգելնին մեղք չէ՛։

Բայց դուն ինչ կըսես նէ ըսէ՛. բողոքականները համարնին սովրած են։ Հակառակորդըդ զըպարտէ՝ կըսէ Մօղդէր. սուտ խօսէ. որքան չհաւատացուի նէ՝ լսողին մտքին մէջ մէկ հետքը մնալն ալ շահ է։ Ասել չեմ ուզեր թէ բողոքականները այսպէս ընելը Մօղդէրէն սովրեցան. շատ հին է. եւ մինչեւ Թոնդրակէն՝

ներուն եւ մինչեւ Պաւղիկեաններուն օրը կը հասնի] որ կըսէին թէ ուղղափառները պատկերին նիւթը[ կը պաշտեն։ Այսքան հինցած սուտ մը մենք ինչո՞վ կրնանք վերցընել, եւ ստախօսները այդ սուտը ըսելէն դադրեցընել։ Եփրեմայ ցեղին մարդոցը պէս «Սիպողէթ» ըսել սորվեր են. «Շիպողէթ» ըսելու լեզունին չպառկիր. թէ՛ եւ ծայրը մահ ըլլայ։ (Դատ. ԺԲ. 6)։

Մ՚ըտք՚րնին գրած գաղափարէն չդառնալու համար է որ միշտ կըսեն. Աստուած տասնաբանեայ պատուիրանքին մէջ հրամայած է որ կուռք չշինուի. ուրեմն պատկեր շինելը Աստուծոյ հրամանին դէմ է։ Հազար անգամ պատասխան տրուած է ատոնց, որ ճշմարիտ Աստուածը սուտերուն հետ չշփոթելու համար տրուած է այդ պատուէրը. իսկ մեր պատկերներէն ճշմարիտն Աստուծոյ տեղ սուտ աստուած պաշտել չհետեւիր. Տեառն մերոյ փրկագործ տնօրէնութիւնը ուրանալ չէ՛. այլ մանաւանդ՝ նոյնը կարդալ չըգիտցողներուն առաջը ներկայացընել է որ միտքերնուն մէջ տպաւորուին. Աստուծոյ ընդունելի եղած սուրբերուն վարքը պատկերով յիշեցընել է. որպէս զի հաւատացեալք անոր հետեւող ըլլան. Բողոքականներէն ըսելիքդ նոյն է միշտ։

Անոր ըսէ՝ պատկերները երբ զԱստուած եւ անոր հրաշագործ զօրութիւնը յիշեցընելու համար կըլլային՝ ինչու երբեք արգիլուած չէին ո՛չ հին եւ

մէջ Նոր օրինաց ատենը ։ Ըսէ թէ հրաման տուաւ Մովսէսի որ անապատը օձէ զարնուողներուն բըժշկութեան համար օձի պատկեր մը շինէ պըղընձէ, եւ բանակին մէջ ամենուն աչքին տեսնըւելու տեղ մը տնկէ (Թւոց. ԻԱ. 8. 9). եւ Տէրն մեր ինքը յայտնեց որ իրեն խաչին վրայ բարձրանալուն օրինակն էր (Յովհ. Գ. 14)։ Եւ երբ իսրայելացիները անիկայ պաշտելու եւ առաջը զոհ ընելու սկսան՝ այն ատենը կործանման արժանի դատեցաւ. եւ Եզեկիա թագաւորն ալ խորտակեց՝ եւ կտորները նետել տուաւ (Դ. Թագաւ. ԺԸ. 4)։ Ըսէ՛ որ Մովսէս մարգարէն տապանակ ուխտին վրայ երկու քերովբէի կամ հրեշտակի նմանութիւն քանդակել տուաւ (Ել. ԼԷ. 7—9). եւ Սողոմոն թագաւորն ալ երբ տաճարը շինեց եւ տապանակ ուխտին հոն վերցընելու եղաւ, երկու քերովբէի նմանութիւն ալ անիկայ դրաւ չէ՛ թէ տապանակ ուխտին վրայ՝ ուր որ առաջուց Մովսէս մարգարէն դրած էր, այլ դաւիրային կամ սրբութիւն սրբութեանց ըսուած տեղին մէջ (Գ. Թագաւ. Զ. 23—28)։ Ըսէ՛ որ Նոր օրինաց մէջ պատկերաց սովորութիւնը շատ հին ըլլալուն վկայութիւններ կան. Տեառն մերոյ առ Աբգար թագաւորը ղրկած կենդանագիրը յիշեցուր. որն որ Եդեսիայի դիւաններէն առնելով կը պատմէ Խորենացին (պատմ. Բ. 32). ուրիշներ ալ յիշեցո՛ւր. որ եկեղեցական հնութեանց մէջ շատ կըրնաս գտնել։

Ըսոնց ի՛նչ պատասխան կառնես։ Մի՛ եւ նոյնը, Աստուած տասնաբանեայ պատուիրանքին մէջ կուռք շինելը արգիլեց կըսեն։ Աս ալ տը-րամաբանական սխալ մըն է. մի եւ նոյն խօսքին մէջ բառի նշանակութիւն փոխել։ Աստուած կուռք շինելն արգիլեց. ուրեմն պատկեր շինելը մեղք է ըսելը՝ [illegible]՝ երկուքը մէկ նշանակու-թիւնով հասկընալ է. որ թէպէտ ընդհանրապէս ամէն բողոքականները Գարլըշդատէն եւ Զուինկ-լէն ՚ի վեր անանկ կը հասկընան. բայց ծուռ հասկըցողն անոնք ըլլալը ծուռը շիտակ չի կըր-նար ընել. միայն աս՛ կը ցուցընէ որ՝ այսպէս խօսողները իրենց ըսածին վրայ յամառած կե-ցած են. հետերնին խօսելով համոզել յուսալը ոչնոտի յոյս է։ Բայց մենք եկեղեցւոյ զաւկըներ-րուն կը զգուշցնեմք որ անոնց ծուռ գաղափարին չխաբուին։

# ՅՕԴՈՒԱԾ 4

*Վերստին ծնունդ ձեռամբ մկրտութեան։*

Արքազան կաթուղիկոսին հովուերգական մոլորութիւններուն մէկն ալ այս է եղեր։ Ասոր վրայ Հակառակորդը կըսէ. " արք եպիսկոպոսին եզրա- ,, կացութիւնը թէ՝ ուրեմն մկրտութիւնը վերըս- ,, տին ծնունդ է, ո՛չ միայն բնաւին հաստատու- ,, թիւն չէ՝ գտած՝ նոյն իսկ իր ըրած տրամա- ,, բանութիւնովը, այլ այնպիսի վարդապետութիւն ,, մըն է, որ աւետարանին զօրութիւնն ու յատ- ,, կութիւնը բնաջինջ կընէ. եւ զանիկայ լոկ ,, արտաքին արարողական բանէ մը կը դարձնէ ,, (Նորոգեմն. եր. 102)։

Քրիստոս տէրն մեր իւր սուրբ աւետարանին զօրութիւնը եւ յատկութիւնը՝ որ է հաւատացող-ներուն հոգւոյ փրկութիւնը, սա խօսքերով կա-պեց. " երթա՛յք յաշխարհ ամենայն, եւ քարո- ,, զեցէ՛ք զաւետարանն ամենայն արարածոց։ Որ ,, հաւատայ եւ մկրտիցի՝ կեցցէ, եւ որ ոչն հա- ,, ւատայ՝ դատապարտեսցի ,, (Մարկ. ԺԶ. 1

16)։ Այս խօսքէն կը հասկընանք որ՝ մէկ մարդ մը յաւիտենական կենաց արժանի ըլլալու համար միայն հաւատալը քիչ կուգայ. մկրտուելու ալ է. իսկ դատապարտելոց կարգը խառնուելու համար միայն չհաւատալը հերիք է. յայտնի է որ՝ չհաւատացողը չմկրտուիր ալ. բայց հաւատացող մը սխալ կարծիքով՝ միայն հաւատալս կօգտէ, մկրտուիլ ալ ի՞նչ պէտք է կըրնայ ըսել. անիկայ զգուշացընելու համար՝ կենաց պայման դրեր է հաւատալն ալ մկրտուիլն ալ։ Ուրեմն աւետարանին զօրութիւնը եւ յատկութիւնը բնաջինջ չըլլալու համար մկրտութիւնը պէտք է եղեր։

Հիմայ տեսնենք թէ մկրտութիւնը վերստին ծնո՞ւնդ է թէ չէ։ Ան է որ մկրտութիւն ըսելով Քրիստոսի տեառն մերոյ սահմանած խորհուրդը կը հասկընանք, եւ ո՛ր եւ իցէ օրինակաջրով լուացուիլը չենք հասկընար նէ՝ ինչ ըլլալը այս խորհուրդը սահմանողէն հարցընելու է. եւ անոր ըսածն ալ ձեռքերնիս է. սուրբ Աւետարանին մէջն է։ Տէրն մեր կըսէ Նիկոդիմոսի. «եթէ » ո՛չ ոք ծնցի վերստին՝ ո՛չ կարէ տեսանել զար» քայութիւնն Աստուծոյ» (Յովհ. Գ. 3)։ Նիկոդիմոս կը տարակուսի թէ անգամ մը ծնած տըղան նորէն ի՞նչպէս կը ծնի. դարձեալ ծնանելու համար մօրը փորը մտնելն անհնար է։ Քրիստոս տէրն մեր ասոր տարակոյսը փարատելու համար՝ որ վերստին ծնանիլ բառերէն ծագած էր, կը փոխէ ն բառը, եւ անոր դիւրաւ հասկըցուելու՝ բայց

Նշանակութիւնը նոյն՝ ուրիշ բառ կը դնէ. « Եթէ ո՛չ ոք ծնցի ՚ի ջրոյ եւ ՚ի հոգւոյ, ո՛չ կարէ մտանել յարքայութիւնն Աստուծոյ » (անդ. 5)։ Արդեն ՚ի ջրոյ եւ ՚ի հոգւոյ ծնանիլը՝ որ է մկրտուիլ ըսուածը, վերստին ծնանիլ է. եւ վերստին ծնանիլը՝ ՚ի ջրոյ եւ ՚ի հոգւոյ ծնանիլն է. այսինքն՝ մկրտուիլն է։ Ապա հակառակորդը որ-կէ՞ առեր է ըսելը թէ՝ արք եպիսկոպոսին եզրակացութիւնը թէ մկրտութիւնը վերստին ծնունդ է, լրած տրամաբանութիւնովը հաստատութիւն չգտնելէն զատ աւետարանին զօրութիւնն ու յատկութիւնը բնաջինջ կընէ։

Մկրտութեան զօրութիւնն ալ քննած ատեննիս՝ որով վերստին ծնունդ ըսուելու իրաւունք ըստացած է, պիտի տեսնենք որ հակառակորդը ինքն ալ կըստիպուի իրեն ինքնահնար աւետարանին զօրութիւնը բնաջինջ ընելու, եւ ուղղափառներուն քարոզած եւ հաւատացած աւետարանին կողմը բռնելու։

Մկրտութեան զօրութիւնը՝ սկզբնական մեղքով բարոյապէս եւ հոգւով մեռած մարդիկ կենդանացընել է։ Աստուծոյ համար ջրով մկրտեալը մեղաց համար մեռած կըլլայ. ջուրին մէջ կը թաղուի. եւ ետքը ջուրէն ելլելով նոր կենաց մէջ շրջելու համար յարութիւն առած՝ եւ սկզբնական մեղքէն ազատած կըլլայ։ Այս վարդապետութիւնը սուրբ Պօղոս առաքեալը մեզի կը սորվեցընէ։

Պօղոս կը հարցընէ. մենք որ մեղքի համար մեռանք նէ՝ ասկէց ետքն ալ ի՞նչպէս նոյն մեղաց մէջը ապրինք: Չե՞ք գիտեր կըսէ, որ մէկ անգամ մը ՚ի Քրիստոս Յիսուս մկրտուելովնիս անոր մահուանը մկրտուեցանք. այն մկրտութիւնովը անոր հետ թաղուեցանք. որ ինչպէս որ Քրիստոս Հօր փառքովը յարութիւն առաւ, մենք ալ նմանապէս կեանքի նորոգման՝ կամ նոր կեանքի մէջ շրջիմք (Հռոմ. Զ. 2—4): Այս խօսքերով յայտնի կընէ սուրբ առաքեալը՝ որ մկրտութեամբ մարդս մեղաց նկատմամբ կը մեռնի, եւ նոր կենաց նկատմամբ կը կենդանանայ. ըսել է թէ սկզբնական մեղքէն կազատի:

Հակառակորդն ալ ասոր համոզուած կերեւի, որ կըսէ. «մանկանց մկրտութիւնը անիմաստ արարողութիւն մը կըլլայ; եթէ նոքա սուրբ ծընեալ են. եւ եթէ չկայ այնպիսի բան ինչպէս սկզբնական մեղք. կամ թէ որ չկայ կապակցութիւն մը Ադամայ մեղացն ու աշխարհի վատթարացեալ վիճակին մէջ» (Ընդդիմախ. Եր. 111. 112): Դուն հայերէն աշխարհաբարին անսովոր շէնքին մի՛ նայիր. հաւատքը նորոգողները հայերէն լեզուն ալ նորոգելու ելեր են՝ բան մը ըսել չէ: Ըսած խօսքին միտքը նայէ՛. որ յայտնի կիմացուի: Թէ որ սկզբնական մեղք չըլլար նէ՝ տղայքը սուրբ ծնած կըլլային. ուստի սուրբ ըլլալու համար վերստին ծնանիլ պէտք չէր ըլլար. եւ այն ատենը մկրտութիւնը անիմաստ

տարաբաղդութիւն մը կըլլար. վասն զի չէր հասկըցուեր թէ արդէն սուրբ ծնած տղան ինչո՞ւ համար մկրտութիւնով վերստին ծնանելու կարօտ պիտի ըլլայ։

Նոր այս խօսքէն ո՞վ չհասկընար թէ մկըրտութեան սկզբնական մեղքը սրբելու զօրութիւնը եւ վերստին ծնունդ ըլլալը հակառակորդը ընդունած է. եւ ասիկայ ընդունիլը մեր հաւատքին չդըպչիր. սկզբնական մեղքը մկրտութիւնով ջնջուիր եւ մկրտութիւնը վերստին ծնունդ չէ՝ ըսողներուն աւետարանին կը դպչի, որուն կը հետեւի հակառակորդը։ Ուստի երբ այս խօսքով ասիկայ մեր աւետարանին կհամաձայնի՝ իր աւետարանին զօրութիւնը եւ յատկութիւնը բնաջինջ կընէ. եւ մենք ուրախ ենք։

Մկրտութեան վրայ ընդարձակ խօսած ենք Ճշմարտութեան տետրակին մէջ. եւ հակառակորդը թող ներէ՝ որ մեր ընթերցողները անիկա ալ կարդալու հրաւիրենք. ինչպէս որ ինքն ալ իր ընթերցողները իրենց (կամ գուցէ իրեն) շինած Ճշմարտութեան եւ վերստին ծնունդեան տետրակին կը խրկէ։ Մեր տետրակը կարդացողը՝ սուրբ աւետարանին եւ առաքեալներուն եւ ընդհանուր եկեղեցւոյ հաւատքը եւ վարդապետութիւնը կը սորվի. հակառակորդին ցուցուցածը կարդացողը՝ անոր հեղինակին այն ատենը ունեցած կարծիքը կը սորվի. որ գուցէ հիմա այն կարծիքին վրայ ալ մնացած չէ՝։

# ՅՕԴՈՒԱԾ 5

Անկանոն գրքերը իբրեւ աստուածաշունչ մատեան ընդունիլը ։

Այս գրքերուս համար անկանոն ըսելը՝ որ քանի մի հին եկեղեցական մատենագիրներ գործածեր են, երբայեցւոց մէջ գտնուած սուրբ գրքոց կանոնէ դուրս ըսելու նշանակութեամբ, հակառակորդին գործածելն անտեղի է. որովհետեւ խօսքին կարգէն այդ նշանակութեանը յատկացեալ ըլլալը չերեւիր։ Երկրորդականոն կըսուին ասոնք սովորաբար։ Բայց մենք այս անտեղութիւնը մէկ դի ձգելով՝ որ ուրիշներուն քով թէթեւ բան մըն է, հակառակորդին ըսածին նայինք։

Նախ՝ կը գանգատի որ՝ սուրբ գրքէն դուրս ձգած բաներնին սրբազան կաթուղիկոսը երկու տեղ յիշելով իրարու նման չէ՝ խօսեր։ մէկէն մէջ՝ դուրս ձգած գիրքերնուն ամէն մէկը քանիկան գլուխ պարունակելը. եւ մէկալին մէջ միայն գրքերուն անունը գրեր է։ Ատքը դուրս ձգած

գրքերուն համար այսպէս կը խօսի ։ « Միւս
» գրքերն որ արք եպիսկոպոսը կը յիշէ. (Եզրասայ
» եւ Եսթերի եւ Դանիէլի գրքերէն զատ), ա-
» նոնք Եբրայեցերէն Աստուածաշունչին մէջ չէ-
» ին գրուած. անոնք անծանօթ էին Հրէից, ո-
» րոնցմէ քրիստոնէական եկեղեցին ընդունած է
» հին կտակարանը. անոնք չըներշնչեալ մարդոց
» ձեռօք գրուեցան առաքելոց օրերէն շատ դա-
» րեր ետքը, անոնք սխալմունքներ եւ հակասու-
» թիւններ կը պարունակեն, որ անանկ բաներ
» կարելի չէ՛ որ գտնուի ներշնչացեալ գրոց մէջ.
» եւ աստուածային հեղինակութեամբ գրուած չեն
» ընդունիր բողոքականք։ Կ՚իմանանք թէ լու-
» սաւորչական հայոց եկեղեցիին մէջ ալ չեն կար-
» դացուիր աս գրքերը. որ եթէ միւս ներշըն-
» չացեալ մատեաններուն պէս ըլլային, անոնք
» ալ պիտի կարդացուէին » (Ընդդիմախ. եր. 94.
95)։

Վէճի տակ եղած բանի մը հաստատութեան համար մէկը փաստեր բերէ՝ եւ փաստերն ստուգելու հոգ չտանի նէ. այն փաստերը տկար կըմնան։ Հոս հինգ հատ փաստ բերեր է այն անկանոն ըսած գրքերը սուրբ գրոց կարգէն դուրս ձգելնուն իրաւունքը ցուցնելու համար. եւ մենք բացարձակապէս կըրնանք ըսել թէ ամէնն ալ սուտ են։ Այս նիւթոյս վրայ բողոքականները առանձին տետրակ մըն ալ տպած են՝ Աստուածաշունչին կանոնական գիրքերը որոշելու վրայ խորագրով

եւ մենք անիկայ տպուեցէն. քանի մի տարի առաջ Ամերիկայի քարոզիչներուն մէկին մեզի ուղղած մէկ ընդարձակ գրուածոյն դէմ. որ ձեռագիր է քովերնիս. բայց մէջէն շատ բան անցած է յիշեալ տետրակին մէջ, առանձին գիրք մը չինած եմք Վրիժնդրութիւն հանդէպ սուրբ Եղոց խորագրով. որ տակաւին ձեռագիր է. եւ անոր մէջ այս բոլոր առարկութիւնները՝ որ նոր չեն, միըստ միոջէ քըննած եմք: Հոս նոյն քննութիւնները կրկնելը շատ երկար ըլլալուն համար բաւական կը սեպեմք համառօտ մը խօսիլը:

Անգղիական հին մատենագիրներուն գրուածոյ մէջ կը գտնեմք որ այն երկրորդականոն գըրքերուն շատը հրեաները թէպէտ իրենց սուրբ գրքին մէջ չէին առած, սակայն Հագիոգրաֆէր ըսած կարգը դրեր էին. եւ այս գիրքերուն կարգըն են անոնց աստուածաշնչին մէջ սաղմոս. Յոբ. Սողոմոնի առակք. երգ երգոց. ժողովող. Դանիէլի մարգարէութիւնը. Մնացորդաց երկու գրքերը. Եզրասայ երկու գիրքը. Եսթերայ գիրքը: Սուրբ Ջերոնիմոս՝ որ եբրայականի քաջահմուտ անձ մըն էր եւ սուրբ գիրքը անոնց լեզուէն լատիներէնի թարգմանեց. կըսէ թէ Յուդիթի եւ Տոբիթի գրքերն ալ՝ որոց հին եբրայականը հիմայ չկայ հրէից մէջ, այս սրբագնագիրքերուն կարգը կը դնէին: Աւրեմն ասոնք ալ երբեմն հրեաները կընդունէին եղեր. հիմայ անոնց ընդունելութեան նայելով քրիստոնէից սա-

տուածաշունչէն ալ դուրս ձգելս արդէն չէ՞ր մի չընդունելնուն պատճառը նոյն իսկ Հրեաներէն սովրիլ. եւ եկեղեցւոյ ընդունած գրքերուն ամբողջութեանը չդպչիլ։ Ուրիշ գրքերն ալ երբեմն Հրեաներուն ծանօթ ըլլալը. ինչպէս մակաբայեցւոց գիրքը, Սիրաքայ գիրքը. Բարուք, եւ այլն, ընդդիմախօսութեան Հեղինակը կրնայ դիւրաւ սովրիլ, թէ որ կարօտութիւն կը ցուցընէ նէ՝ մենք ալ իրեն կօգնենք. Հոս երկարութենէ փախչելնուս համար չգրեցինք։ Բայց սուտ կելլէ ըսածը " թէ անոնք անծանօթ էին Հրէից "։ Իսկ եբրայեցերէն հիմակուան կամ հին տառենուն աստուածաշունչին մէջ գրուած չըլլալը փաստ մը չէ՛։ Եւ մէկ երկու կտորի համար կրնանք իրեն ստուգել որ առաջ սուրբ գրոց մէջ կային, ետքը Հրեաները հանեցին։ Թէոդոտիոն անուն մէկ մը եբիոնեան աղանդէն՝ որ քրիստոնէութեան հետ Հրէութեան խտրական օրէնքները պահել հարկ կը սեպէին առաքելոց երուսաղէմ ըրած ժողովքին վճռոյն դէմ. եբրայական աստուածաշունչը բառ առ բառ յունարէնի թարգմանեց Կոմոդոս կայսեր ժամանակը. Քրիստոսի 184 կամ 85 թուին։ Այս թարգմանածին մէջ Դանիէլի մարգարէութիւնը ամբողջ կար. Շուշանայ եւ Բէլին եւ Վիշապին պատմութիւնն ու երից մանկանց երգն ալ մէկ տեղ առնելով. որ բողոքականներուն տպածներուն մէջ չկայ. եւ լատին աստուածաշունչը յայտնի կըսէ թէ եբրա-

յական օրինակներուն մէջ չգտնուելով այս կտոր-ներն՝ Սեւերոսի յունարէնէն թարգմանուած են։ Ահա՛ գիրք մը, որուն Եբրայականին մէջէն չորրորդ դարուն կէսերը պակսած կտորը՝ երկրորդ դարուն դէպ ՚ի վերջը կը գտնուի եղեր։ Ինչ վստահութիւն կրնայ ասկէց ետքը եբրայական բնագրին ամբողջութեանը վրայ, որ քրիստոնեայք ալ իրենց աստուածաշունչը անոնցինին յարմարցընեն։

Քրիստոնէական եկեղեցին հին կտակարանը հրեաներէն ընդունած է ըսելը՝ թէ որ անոնց ընդունածէն զատ գիրք չէ՛ ընդունած ըսելու ճամբով է նէ՝ սո՛ւտ է. եւ հակառակորդը իրեն սիրելի կրկնածն ոչ քան ըսուած իմաստակութեան մէջ ինկած կը գտնուի, որն որ շատ տեսնր էր (իր աչքերովը) քարէ մորթ գրքին մէջ։ Ասոնք զի սրբազան կաթուղիկոսին եւ մեր չընդունած մէկ քանը՝ մեր մէկ ուրիշ չընդունած քանը մեզի ընդունել տալու համար իբրեւ փաստ գործ կածէ։ Եկեղեցին սուրբ գիրքերն ո՛րը ըլլալը հրեաներուն հարցուցած չէ։

Որոգինէս անգամ մը Դանիէլի մարգարէութեան ԺԳ գլուխէն՝ հաւատոյ միաբանութեան մէջ վկայութիւն մը բերած ըլլալով՝ անոր Ափրիկանոս անուն մէկ բարեկամը անոր գրեց որ այն գլուխը ընդունելի չէ՛. որովհետեւ հրեաներուն աստուածաշունչին մէջ չկայ։ Բողոքականներուն ալ ըսածը ա՛յս է։ Որոգինէս ասոր պա-

տասխան գրեց ընդարձակ. որուն մէջէն մեր այս տեղի խօսքին պատշաճելիքը սա՛ է. «Զգուշա-
„նամք՛ կըսէ. որ կամ անխոհեմութեամբ կամ
„տգիտութեամբ դուրս չձգեմք եկեղեցւոյ ընդ-
„հանրապէս ընդունած օրինակները. եւ մեր եղ-
„բայրներուն վրան նոր օրէնք մը չդնեմք պար-
„տաւորելու որ արդէն ձեռքերնին ունեցած սուրբ
„գրքերը ձգեն, եւ երթան հրեաները շողոքոր-
„թեն. որպէս զի մաքուր՝ եւ մէջը առասպել
„չպարունակող գրքեր տան մեզի։ Վասն զի
„աստուածային նախախնամութիւնը՝ որ սուրբ
„գիրքերը եկեղեցեաց տալով անոնց կատարեալ
„շինութեանը հոգ տանիլ ուզեց, կրնա՞ր արդ-
„եօք անհոգ ըլլալ անոնց համար՝ որ Քրիստոսի
„մահուան պէս ծանր գնով գնուեցան։ Չէ՞ մի
„որ Աստուած իր սուրբ գրքերուն մէջ կըսէ.
„ձեր նախնիքներուն դրած յաւիտենական սահ-
„մանները չփոխես„։ (Թուղթ առ Ափրիկանոս. Գլ. 4)։ Արդեօք հակառակորդը այս վերջին վկայութեանս նախընթաց խօսքերուն հետ ունեցած կապակցութիւնը կը հասկընա՞յ։ Բայց դիւրին է հասկընալը որ՝ եկեղեցւոյ մէջ Որոգինէսի ժամանակ ի՛նչ գիրք ընդունուած էին նէ նախնի սուրբ հայրերուն աւանդութիւններէն էր. եւ սահմանները յաւիտենական կանուանէ նէ՝ շատ հին ըլլալը կը ցուցընէ. Բայց Որոգինէսի այս նամակը գրած ժամանակն է Քրիստոսի 228—230 թուականը։ Յիշեալ աւանդութիւնը քանի՛ տա-

րի առնէց առաջ ըլլալու է որ յայտնական ընթունելու չափ հին ըլլայ։ Հարիւր տարին այնքան հին չէ՛. իր հօրը հայրը կամ անոր ժամանակակիցները տեսնող եւ անկէց տեղեկութիւն սացող մարդու մը համար հարիւր տարին իր ժամանակին երազի պէս կուգայ։ Գոնէ հարիւր յիսուն տարի մը ըլլալու է այդ հին ըսածը. եւ առով Քրիստոսի 78—80 թուականը կը հասնիմք. որ առաքեալներէն կենդանի մարդ կար այն ատենը. առաքելոց աշակերտներ ալ շատ կը գտնուէին. Այնկէց բնապէս կը հետեւի որ առաքեալները որ եկեղեցւոյ առաջին բարեկարգիչները եւ կանոնադիրներն են, քրիստոնէական եկեղեցւոյ ընդունել տալու սուրբ գիրքերուն համար հրեաներուն աստուածաշունչը չեն նայեր, իրենք առանձին կանոն աւանդեր են. Սուրբ գրոց այս առաքելադիր կանոնը՝ առաքելական ըսուած կանոններուն մէջ կը պարունակի. որոնք թէպէտ առաքեալները գրի առած չեն, բայց անոնցմէ ետքը անոնց հետեւողները գրած ըլլալը անտարակուսելի է։ Նոյն Որոգինէսը՝ Մատթէոսի մեկնութեան մէջ Դանիէլի մարգարէութեան նոյն ԺԳ. գլուխէն վկայութիւն մը մէջ բերելէն ետքը կըսէ. «Հոս Դանիէլի խօսքը մէջ բերինք. որ եբրայականին մէջ գրուած չէ՛. այլ եկեղեցւոյ մէջ բռնուած է» ([illegible]. [illegible]. Հտր. Դ. Ե. 870).

Սուրբ գիրքերը անսուրբ գիրքերէն որոշելու համար եբրայականին կարօտ չըլլալով եկե-

ղեցին գիտել կը սովրեցընեն քրիստոնէութեան Նախնի դարերու ուրիշ Հայրեր ալ. որոնց մէջէն երկու Հատուածը բերելը Հերիք սեպենք։ Մէկըն է սուրբն Կիւրեղ Երուսաղեմի Հայրապետը՝ չորրորդ դարուն մէջ. որ Նորահաւատները մկրտութեան պատրաստելու Համար խօսած ճառերուն մէջ. զոր Կոչումն ընծայութեան անունով Հայերէնի թարգմանուած է Հինգերորդ դարուն մէջ, եւ երկրորդ տպագրութիւն եղած է Վիէննա 1832 ին, այսպէս կըսէ. " 'ի ծածուկ յայտնու-
„թիւնսն ամենեւին մերձեցջիր մի՛, զի յայս կան-
„խեսջիր ընթեռնուլ, զոր մանաւանդ Համար-
„ձակութեամբ յամենայն եկեղեցիս կարդամք„։
Եւ այս ծածուկ յայտնութիւն ըսուածն ալ՝ սուրբ գիրք անունով Հերետիկոսներուն շինածն ըլլալը կիմացընէ ըսելով. " 'ի նորոց կտակարանաց չորք
„աւետարանք միայն. այլ այլքն `սուտ անուա-
„նեալ գրեալ, եւ վնասու ընթերցեալ ընթեռնըլ-
„եացն։ Գրեցին մանիքեցիքն Թովմայի գը-
„լուխ աւետարան, որում անուշահոտ աւետարա-
„նացն անուն եդեալ կարդան. ծեփեալ շաղախ
„առաքելականնել զոգիս միամտացն„։ Եւ նոր կըտակարանի գրքերը Համրելէն ետքը՝ առաջին խօսքը կըկրկնէ. " այլն ամենայն 'ի բացեայ կայ-
„ցէ կըսէ. եւ որ միանգամ յեկեղեցիս ո՛չ ըն-
„թեռնլի են, զայն առանձինն մի՛ ընթեռնու-
„ցուս„։ ( Կոչ. ընծայ. Դ. Լ. Գ. եր. 70. 71 )
Զորօ որ Հրեաները ո՛ր գիրքն ընդունած ենէ

միայն անոնք կարդա՛. այլ ինչ որ Նոր կտակարանի գրքերուն համար հոս այսպէս ըսաւ, Հին կտակարանի գրքերուն համար ալ նոյնը ըսաւ վերը։

Նաեւ որպէս զի չկարծուի որ այս երկու խօսքը մէկ ըսել է. եւ քրիստոնէից դիւրին ըլլալու համար այսպէս ըսաւ. որովհետեւ ամէնը չէին կրնար գիտնալ թէ հրեաներուն ընդունածը կամ չընդունածը ո՛ր գիրքերն են, եկեղեցւոյ ընդունածները ցուցուց, ամէնը մէկ ըլլալուն համար. Ս. Օգոստինոս ալ Որոգինէսի պէս յայտնի կը ցուցընէ թէ եկեղեցին սուրբ գիրքը ընտրելու համար հրեաներուն բերանը նայած չէ՛։ Յաղագս քաղաքին Աստուծոյ գրքին մէջ՝ որ հայերէն թարգմանուած եւ Վենետիկ տպուած է 1841 ին, տաճարին շինուելէն ետքը հրէից քահանայապետներուն ժամանակագրութեանը վրայ խօսելով կըսէ թէ ասոնք կանոնական ըսուած գրքերուն մէջ չեն գտնուիր, այլ ուրիշ գրքերու մէջ կան. որոց կարգն են Մակաբայեցւոց գրքերն ալ, “ եւ զայ-
„ սոսիկ ոչ հրեայք՝ այլ եկեղեցի առ կանոնականս
„ ունի „ (յղ. քաղ. Աստու. ԺԸ. 36)։ Նաեւ ուրիշ տեղ մը՝ Սիրաքայ եւ իմաստութեան գրքերուն համար կըսէ թէ Սողոմոնի կընծայեն շատերը՝ զրուցուածքի նմանութեան համար. բայց գիտունները անոր չըլլալը գիտեն. “ Սակայն
„ եւ զսոսին 'ի վկայութիւն առնու եկեղեցի՝ մա-
„ նաւանդ արեւմտեան՝ 'ի վաղ ժամանակաց „ (յղ. քաղ. Աստու. ԺԷ. 20). եւ իմաստութեան գրը-

ջէն տեսան մերոյ չարչարանացը համար, եւ Սի-
րաքայ գրքէն՝ եւքի ժամանակները հեթանոսնե-
րուն 'ի Քրիստոս հաւատալուն համար ըրած մար-
գարէութիւնները. Միջ բերելէն ետքը կըսէ.
“ չէ՛ օրէն առ հակառակողսն յանդգնս 'ի դէ-
„ մըս ածել զանգրեալսն 'ի կանոնի հրէից„: Նոյն-
սուրբ հայրապետը իր ուրիշ գրքերուն մէջ ալ ա-
սանկ կը խօսի. ինչպէս են ասոնք: “ Հրեանե-
„րը մա՛ս բայեցուոյ կիրքերը օրէնքներուն եւ
„ մարգարէներուն եւ սաղմոսներուն պէս չեն
„ ըրաներ... այլ եկեղեցին ընդունած է զա-
„ տն„: (Ընդդէմ Կոստէնդ. Գլուխ. Ա. 31.
Թիւ. 33). “անոնք ալ դուրս ձգելու չեմք՝
„ որոց Քրիստոսի գալստենէն առաջ գրուած ըլ-
„լալը յայտնի է. եւ հրեաները ընդունած չեն,
„ այլ նո՝ փրկչին եկեղեցին ընդունած է. եւ ա-
„սոնց երկուքը շատերը Սողոմոնի անունով կը-
„յիշեն„ (Հոյնեւէ): Հակառակորդին աչքը լոյս.
այս իր անհնան ըրած գրքերուն գոնէ երկուքը՝
“ առաքելոց օրէրէն շատ դարերով ետքը գըր-
ուած„ չէին եղեր. ինչպէս որ ինքը կը կարծէր.
(Վերադարձ. Եր. 95). եւ աւելցայ մեզի կը ծա-
նուցանէ սուրբն Օգոստինոս, որ Քրիստոսէ ետ-
քը շատ դարեր չէ՛. միայն չորս դար ետքն է:
Ըսկէց հարիւր յիսուն տարի մը առաջ է Որոգի-
նէս. որ Սիրաքայ գրքէն սուրբ գրքի անունով
վկայութիւն կանէ “ պատմութիւն մարդոյն որ-
„պէս զբեռն Պ. Ճանապարհի„ խօսքը (Սիրա.

ԻԱ. 19)։ (Տե՛ս. Ընդդէմ Սկեւռայի. Գիր. Ա։ Լուսաւորչի Լամբրոնացի. դպրոց. Մխիթար. Հատ. Ա. Երես 372)։ Ուրեմն Հակառակորդին այս խօսքն ալ սուտ է. թէ որ խօսքի երկարութենէ չփախչէինք՝ երկրորդականոն գրքերուն ամէն մէկին համար զատ զատ կրնայինք ցուցընել թէ անոնց մէկըն ալ Քրիստոսի տեառն մերոյ աշխարհ գալէն ետքը շինուած չէ՛։ Թէ որ Հակառակորդը բարեհաճի նէ՝ կրնայ Պօղոսի սուրբ գրոց մեկնութեան ամէն մէկին յառաջաբանութեանը մէջ. եւ Կիլէր մատենագրին Ներածութիւն սուրբ գրոց Հին եւ Նոր կտակարանաց գրքին մէջ կանել. եւ ասոնց ըսածները բաղդատել այն իրեն ծանօթ հեղինակին ըսածին հետ՝ որ երկրորդականոն գրքերը Քրիստոսէ շատ դարեր ետքը գրուեցան ըսեր՝ եւ իրեն հաւատացուցեր է։ Ըսածը ինչ փաստերով հաստատելը չեմք գիտեր՝ որ մենք ալ հոս քննութեան առնէինք։

Այլայլութիւններ եւ հակառակութիւններ կան եղեր այս երկրորդականոն (ըստ Հակառակորդին՝ անկանոն) գրքերուն մէջ։ Թէ որ ասոնք ա՛լ ըլլալը հոս նշանակէր նէ՝ լուծումներն ալ հոս կընդունէր. ընդհանուր կերպով խօսելուն համար մեր ընդհանուր պատասխանովը. թող շատանայ։ Ամէն հերետիկոս՝ իր չընդունած սուրբ գրոց մէջ հակասութիւններ կը գտնէ։ Լուտեր՝ Յակոբայ առաքելոյն կաթուղիկեայց թղթոյն վարդապետութիւնը Պօղոս առաքելոյն վարդապետութեա-

նը։ Հակասական կըգտնէր. վասն զի Յակոբու կաթուղիկեայցը ընդունիլ չէր ուզեր։ Մատթէոս եւ Ղուկաս սրբազան աւետարանիչները Քրիստոսի տեառն մերոյ ազգաբանութեան վրայօք իրարու հակասական կը գտնեն անհաւատները. Նոյնպէս տեառն մերոյ յարութեան տանելուն պարագաներուն վրայօք չորս աւետարանիչներուն պատմածները։ Թէ որ բողոքականներուն ալ մենք սուրբ գիրքը կանոն հաւատոյ ունիմք բոլոր մասին ընդունած գիրքերուն մէջէն սխալ կամ հակասական կարծուածները մէկիկ մէկիկ համրէինք, նէ խօսքերնիս շատ կերկըննար։ Այն գրքերուն մէջի կարծեցեալ սխալները եւ հակասութիւնները ի՛նչ կանոնով կը մեկնեն նէ իրենք՝ երկրորդականոններուն մէջ իրենց գտած սխալներն ու հակասականներն ալ անանկ թող մեկնեն. եւ որն որ այդ տեսակ մեկնութիւններէն մէկն ալ չըվերցըներ նէ՝ մեզի թող իմացընեն։

Մինչեւ հոս բերած փաստերնին սուտ բաներ էին նէ՝ վերջին փաստերնուն սո՛յ սուտ ըսել կը վայլէ։ « Կիմանամք՝ կըսէ. թէ լուսա- ,, ւորչական հայոց եկեղեցիին մէջ ալ չէն կար- ,, դացուիր աս (այս) գրքերը։ (Ընդդիմախօս. եր. 95)։ Եւ հոս բարեկամաբար կը ծանուցանեմ հակառակորդին՝ որ հայոց եկեղեցիէն զատուող եւ բողոքականութեան յարող մարդոց՝ լուսաւորչական եկեղեցւոյն համար տուած վկայութեանը չվստահիր. Իր զատուած եկեղեցւոյն հաւատքին

վրայ եւ իբրեւ աստուածաշունչ ընդունած գիր-քերուն վրայ այնպէս մարդ մը վկայութիւն չը-կրնար տալ։ որովհետեւ ո՛չ զատուած եկեղե-ցին գիտէ եւ ո՛չ նոր յարած այլակրօն ընկերու-թիւնը։ Նոր ապացոյցը հիմայ կըտեսնես*։

Միսդր Տուայթ՝ 1843 ին մեզի ուղղած գըր-ուածոյն մէջ որ յօդուածոյս սկիզբը յիշեցինք, ը-սած էր. « շատ յայտնի բան է որ աս յիշեալ գիր-« քերը ( երկրորդականոնները ) միւս գրքերէն կո-« րոշէ ( Հայոց եկեղեցին ). որովհետեւ մակա-« բայեցւոցին մէկ պզտիկ մասնէն 'ի զատ' ամե-« նեւին չեն կարդար անոնք եկեղեցիին մէջ »։ Նոյն իրենց յայտնի եւ շատ յայտնի երեւցած բանին սուտ ըլլալը տասնուեօթն տարուան ընթացքին մէջ չեն կրցեր հասկընալ. միայն տարակոյս մը

* Հոս գրուածներէն դիւրաւ կիմացուի. որ ա-ղէկ տեղեակ չէր Լօրտ Ստրէդֆըրտ տը Ռէտք-լիֆ, երբեմն Անգղիայի Կոստանդնուպօլիս նախոր-դեսպանը, որ մայիսի 14 ին Անգղիոյ տէրութեան խորհրդարանին մէջ ըսաւ տաճկի հպատակ բողոքա-կաններուն համար. « որչափ որ գիտութիւնը տարա-« ծուեցաւ ու մաքրագոյն քրիստոնէութեան մը « կարօտութիւնը զգացուեցաւ, խել մը անոնք ի-« րենց սեփական եկեղեցինին ստիպուեցան թողելու » (Ատենաբեր. յուն. 13. 1860)։ Հոս կըտեսնես որ իրենց եկեղեցինին չգիտցողներն են անոնք թողե-լու ստիպուողները ։

մտեր է մէջերնին. որ եթէ մարդ գրքին Հակա-ռակորդը բերանը փակեր է, չճանաչէ կըսէ: որ-պէս թէ պատասխանատուութիւնը ասիկայ իրեն ի-մացընողին վրայ ձգելով: Ինծի ( և գուցէ ու-րիշներուն ալ ) կերեւի որ՝ այսպէս բերան փակել-նին պատճառ ունի 17 տարի առաջ՝ 1843 ին շար-ժուն կիտուածներնուն վրայ մտածուղ ինչեր է. Հի-մայ այնքան յայտնի չէ. միայն չճանաչելն եղեր։ Բայց իրենց իմացընողն ալ գիրենք խաբեր է։ Հիմայ բողոքականներուն անկանոն ըսած գիրքերէն Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ մէջ կարդացուած ընթերցուածները օրերովին հոս նշանակենք։

Յուդիթէն. ԺԸ. 8. — Ժ. Օ. 4. Աստուա-ծածնի վերափոխման տօներորդ օրը, որ է տօն Յովակիմայ և Աննայի ծնողաց սուրբ Աս-տուածածնին, և կանանց Իւղաբերից։

Իմաստութեան գրքէն՝ յուսացածէն աւելի և ասոնք են։ Ա. 1 — 7. Թադէոսի և Սան-դըխտոյ տօնին, Կուռնէլիոսի Հարիւրապետին և Շմաւոնի ազգականին Քրիստոսի և Պօղիկար-կարպուի Զմիւռնոյ Հայրապետին և սրբոց վը-կայից որ յարևելս կատարեցան" տօնին։

Ա. 5—7. Հոգեգալստեան երեքշաբթի օրը։

Ա. 11 — 15. Թէոդիտոնի քահանային և Զենոնի զինուորին, Մակարայ, Եւդոքսիոյ և Սոմէլայ տօնին։

Ա. 15 — Բ. 22. Լուսաւորչի մուտն 'ի վի-րապ։

Բ. 1—22. Աւագ ուրբաթ երեկունը Թաղման Թաքորէն առաջ.

Բ. 23—Գ. 8. Սրբոցն Գորդէոսի, Պօղիքտոսի եւ Գրիգորիսի. եւ սրբոյն Ներսէսի Հայրապետին եւ Խադայ եպիսկոպոսին տօներուն:

Գ. 1—8. Սրբոց Վարդանանց. եւ սրբոց քառասուն մանկանց, եւ սրբոյն Անտոնինոսի. եւ այլն. եւ սրբոցն Ինդոսի եւ Դոմնայի, եւ ամենայն սրբոց տօներուն:

Գ. 11—17. Խարիթեանց տօնին:

Դ. 7—15. Լուսաւորչին գիւտի նշխարաց տօնին, եւ Ս. Եւստաթոսի Անտիոքայ Հայրապետին տօնին:

Դ. 1—8. Սրբոցն Պետրոսի Աղեքսանդրիոյ Հայրապետին եւ այլն. Լուսաւորչին ելն 'ի վիրապէն. եւ սրբոյն Ստեփաննոսի Հռոմայ Հայրապետին. եւ սրբոցն Իգնատիոսի, Ադդէի եւ Մարութայի տօներուն:

Դ. 16—18. Աբրահամու եւ Խորենայ տօնին:

Դ. 16—23. Ղեւոնդեանց քահանայից տօնին:

Ե. 2—10. Թէոդոսի թագաւորին. Տրդատայ թագաւորին. եւ Աբգարու թագաւորին տօներուն:

Ե. 11—17. Հոգեգալստեան ուրբաթ օրը:

Ե. 11—21. Թէոդիտոնի պաղատացւոյն. եւ այլն. եւ իշխանացն Սահակայ եւ Համազաս-

պայ տօներուն ։ Եւ սրբոց Ատոմեանց տօնին ։

Օ. 22—26. Պօղոսի խոստովանողին տօնին ։

Ս. 12—18. Իսահակայ պարթեւի Հայոց Հայրապետին ։

Ս. 12—20. Սրբոյն Յակոբայ մծբնայ Հայրապետին ։

Ս. 21—24. Հոգեգալստեան շաբաթ օրը եւ Որդւոց որոտման տօնին ։

Ս. 25—Հ. 4. Վարդավառին սուրբ պատարագին ատենը ։

Հ. 7—10. Սրբոյն Եպիփանու Կիպրացւոյն. եւ սրբոց Թարգմանչաց Սահակայ եւ Մեսրոպայ. եւ սրբոց Թարգմանչաց Մեսրոպայ. Եղիշէի. Մովսէսի քերթողին. եւ այլն. տօներուն ։

Հ. 19—Ն. 5. Սրբոյն Գէորգայ եւ սրբոյն Սարգսի տօներուն ։

Ն. 9—12. Գունկիանոսի քահանային տօնին ։

Ն. 9—Դ. 12. Երկոտասան առաքելոց, եւ եօթանասուն եւ երկու աշակերտացն. Յովակիմայ եւ Աննայի ծնողաց սուրբ Աստուածածնի տօներուն ։

Ն. 13—Դ. 12. Չորս աւետարանիչներուն եւ ուրիշ առաքեալներուն, Որդւոց որոտմանէն զատ՝ տօներուն. եւ Հոգեգալստեան հինգշաբթի օրը ։

Դ. 9—12. Գրիգորի սքանչելագործին եւ Բարսղամու տօներուն ։

Ժ. 9—20. Ղազարու յարութեան։

ԺԳ. 1—8. Վերացման խաչին օրը սուրբ պատարագէն առաջ, եւ գիւտ խաչին օրը սուրբ պատարագի ատեն։

Ասոքանս իմաստութեան գրքէն են։

Բարուքայ մարգարէութենէն առնուածներն են.

Գ. 31—Դ. 4. Պետրոսի Աղեքսանդրիոյ հայրապետին. եւ Կոստանդիանոսի թագաւորին. եւ Գուրիասայ տօներուն։

Դ. 36—Ե. 4. Ծաղկազարդին կիրակունը. եւ Գայիանեանց տօնին։

Դ. 36—Ե. 9. Վերացման խաչին երեքշաբթի օրը։

Դանիէլի երրորդ գլուխն ամբողջ՝ երից մանկանց երգն ալ մէկ տեղ, Ծնունդի եւ Զատկի ճրագալոյցին՝ սեղանին վրայ, որպէս թէ բողոքականներուն ցուցընելու համար թէ իրենց սուրբ գիրքէն դուրս ձգած մէկ հատուածը հայոց եկեղեցին կընդունի։ Երից մանկանց երգը՝ որ է բողոքականներուն դուրս ձգածը՝ ամէն օր առաւօտեան ժամերգութեան սկիզբը կըկարդացուի անխափան։

Հակառակորդին եւ կրօնակիցներուն տպած սուրբ գրքէն դուրս մնացած գրքերուն այսքան անգամ "լուսաւորչակրօն հայոց եկեղեցւոյ մէջ" կարդացուելէն ետքը ի՞նչ կըրնանք ըսել հակառակորդին. բայց եթէ իրմէ հրաման խնդրել սրբազան կաթուղիկոսին համար ըսած խօսքը ի–

րեն կրկնելու, «Ի՞նչ ուրիշ բան է ասիկայ. բայց «ետեւ չիտակէ չիտակ՝ անտարակուսելի անպատ«տրուակ՝ սեւաղէմ սուտ մը» (Ուղղախօսութ. 95) Չէր ուզեր պատուելի Հակառակորդին այսպէս բան մը ըսել. բայց իրեն՝ մեր սրբազան կաթուղիկոսին համար բանեցուցած բառերն են. եւ ինքը որովհետեւ այս գիրքերուն Հայոց եկեղեցւոյ մէջ կարդացուիլը կամ չըկարդացուիլը չգիտեր, միայն իմացեր է որ չկարդացուիր եղեր, այն իրեն խօսքը որ իրեն կը դարձընեմք, կրնայ իրեն այսպէս սուտ տեղեկութիւն տուողին տալ։

Երբ որ յիշատակեալ կանոնք սուրբ Գրոց գիրքերնիս տպելու յաջողին նէ՝ մնացած տարբերութիւնը անկէց առնելու թող սպասեն մեր ընթերցողները։ Իսկ Հակառակորդը՝ «աստուածաշունչին կանոն«նական եւ անկանոն գիրքերուն որոշմանը վրայ» իր ընթերցողը իրենց տպարանէն ելած մէկ տետրակէ մը սորվելու կը հրաւիրէ. որ վերնագրեալ է. աստուածաշունչին կանոնական գիրքերը որոշելու վրայ։ Ո՛վ որ եկեղեցւոյ որոշումը սորվիլը հերիք չսեպեր նէ՝ ազատ է այդ տետրակէն սորվելու. բայց մտքէն չհանէ՝ որ անկէց սորվածներուն ստոյգ ըլլալն ալ ուրիշ տեղերէն իմանալու կարօտ պիտի ըլլայ. միայն այն տետրակը կարդալով սխալ տեղեկութիւններով միտքը ծանրաբեռնելուն մէկ առաջոյցն է՝ Հակառակորդին քանի մի տող խօսքերուն մէջ պարունակած սա տեղը։

# ՅՕԴՈՒԱԾ Զ

## Փրկութիւն 'ի ձեռն բարեգործութեանց ։

Յայտնի՛ է որ՝ ամենայ հոգեկործան մոլորութիւններուն կարգը դնողը՝ առոր հակառակը փրկարար ճշմարտութիւններուն կարգը պիտի դնէ ։ Նոյն առոր հակառակը կըլլայ՝ ո՛չ փրկութիւն 'ի ձեռն բարեգործութեան . կամ՝ փրկութիւն 'ի ձեռն ո՛չ բարեգործութեան ։ Այս երկու մոլորական կարծիքներուն առաջինը կընշանակէ՝ թէ բարեգործութեամբ մարդ չփրկուիր . կամ թէ բարեգործութիւնը օգուտ մը չունի փրկութեան նկատմամբ ։ Երկրորդը՝ թէ բարեգործութեան հակառակովը մարդ կը փրկուի . ըսել կըլլայ թէ չարագործութիւնով փրկութեան կըհասնուի ։ Ասոնց երկուքն ալ բողոքականներուն մէջ բազմներ կան ։

Ղուլիէն՝ եւ Հիւսկուան բողոքականներն առհասարակ կըսեն որ՝ Քրիստոսի տեառն մերոյ իր չարչարանօք եւ արեան թափելովը մարդիկ ամէն ալ մեղաց գերութենէն ազատեցան համար հիմայ միայն հաւատքը բաւական է փրկութեան . բա-

րի գործքը օգուտ մը չունի. եւ սուրբ Միմոն մո-
գին վարդապետութեան հետեւող կը գտնուին.
(շատերը չգիտնալով. բայց եկեղեցւոյ վարդա-
պետութեան չհետեւելէնին աղ իրենց բաւական
յանցանք է)։

Սուրբն Իրենէոս՝ հետեւող առաքելոց ըն-
ուածը, որ Քրիստոսի երկրորդ դարուն եկեղե-
ցական մատենագիրներէն է, կը պատմէ (Ընդ-
դէմ աղանդ. Ա. 20) թէ Միմոն մոգը զինքը
Աստուծոյ տեղ կը դնէր. եւ կըսէր թէ մարդիկ
միայն իմ շնորհքէս յուսալու են իրենց փրկու-
թիւնը. բարեգործութեան նայելու չեն. որով-
հետեւ ամէն գործքերը ինքնին անտարբեր են.
եւ գործքերուն ոմանց բարի եւ ոմանց չար ըսելը
հրեշտակները հնարած են մարդիկ իրենց ծառա-
յեցընելու համար. ուստի ինծի եւ Հեղինէիս*
յուսացողները այս աւելորդապաշտութիւնէն ա-
զատուած են, եւ ի՛նչ որ ուզեն նէ՝ ազատ են
ընելու։ Բողոքականները Միմոն մոգէն աւուր կը-
տարբերին՝ որ կըսեն թէ մարդոյս բնութիւնը
ապականեալ ըլլալով, որովհետեւ ինչպէս որ հա-
կառակորդը կըսէ (Ընդդիմախ. եր. 124), "մար-
"դըս բարի ծնեալ չէ, անիկայ բնականապէս
"բարի չէ", ըրած գործքերն ալ բնականապէս

* Հեղինէ՝ մէկ վաքքը աւրուած կին մըն էր. որ Սի-
մոն մոգ հետը կըպըտըտցընէր. եւ կըսէր թէ հրե-
շտակները անոր ձեռօքը ես ստեղծեցի.

չար կըլլան ։ Եւ օգուտ չընէր քանզի թէ հաւատացեալ մարդոց բարեգործութիւնները չար չենք ըսեր, այլ հոգւոյ եւ հաւատքի պտուղ կըսենք ։ Արդ զի երբ որ հոգւոյ փրկութեան կարգի մէջ բարեգործութեան խօսք կըլլայ նէ՝ մենք ալ՝ բոլոր քրիստոնեայք ալ այսպէս կըսենք ․ եւ թէ որ անոնց միայն ալ նոյնը ըլլար նէ ինչո՞ւ համար ասիկայ ուղղափառաց վրայ իբրեւ հերետիկոսութիւն մը պիտի ցուցընէին ։ Ինչո՞ւ համար այսպէս բան մը իբրեւ հերետիկոսութիւն եւ հոգեկործան մոլորութիւն պիտի ցուցընէին սրբազան կաթուղիկոսին վրայ, որ յայտնապէս կըսէ ․ ‹‹ Հաւատացեալ քրիստոնեայն ինչո՞վ պիտի
›› յայտնէ, որ իրեն սրտին մէջ հաւատոյ ճըշ–
›› մարտութիւնը կատարելապէս անպականած ու
›› պահած ունի, եւ անոր անաղօտ լուսովը հոգ–
›› ւոյն միտքը լուսաւորուած է ․ կարծեմ թէ սուրբ
›› գիրքերուն ըսածին նայելով ուրիշ կերպով կա–
›› րող չըլլար հաստատելու, այլ միայն իրեն բա–
›› րեպաշտական եւ առաքինական գործքերովը ․
›› որոնք պիտի ըլլան վկայ հաւատարիմ ։ Նոր հա–
›› մար կըգրէ Յակոբոս առաքեալը ․ Աբրահամ
›› նահապետն ալ օրինակ բերելով ․ զի՞նչ օգուտ
›› իցէ եղբա՛րք իմ, եթէ ասիցէ ոք հաւատս ու–
›› նել՝ եւ գործս ոչ ունիցի ․ մի՛ թէ կարիցէ՞ն
›› հաւատքն ապրեցուցանել զնա ․ ․ ․ Կամի՞ս գի–
›› տել ո՞վ մարդ ունայն ․ զի հաւատք առանց գոր–
›› ծոց դատարկ են ։ Աբրահամ հայր մեր ո՞չ ա–

,, պաքէն 'ի գործոց արդարացաւ, հանեալ 'ի սե-
,, ղան զորդին իւր զԻսահակ՝ պատարագ. Տե-
,, սանե՞ս՝ զի հաւատքն եղեւ գործակից գործոց
,, նորա. եւ 'ի գործոց անտի հաւատքն կատարե-
,, ցան ,,։ Յակ., Բ. 14. 20—22։ (Նոր Կտակ. էջ. 302)։ Սրբազան կաթուղիկոսին այս խօսքը հակառակորդը բոլորովին չ յիշեր. որպէս թէ տեսած չըլլար։ Բայց գոնէ սուրբ գրոց մէջ բարեգործութեան մարդոյս փրկութեան համար օգտակար ըլլալուն վրայ բազմապատիկ խօսքերը տեսնելու էր. Քրիստոսի անունով հրաշք ընողները 'ի հարկէ անոր անուանը կը հաւատային. բայց երկնաւոր փառքէն պիտի մերժուին միայն անոր համար որ իրենց հաւատոցը հետ բարեգործութիւն ալ չունէին։ Տէրն մեր ինքն կըսէ.
" բազումք ասիցեն ցիս յաւուր յայնմիկ, տէ՛ր
,, տէ՛ր. ո՞չ յանուն քո մարգարէացաք, եւ յա-
,, նուն քո դեւս հանաք. եւ յանուն քո զօրու-
,, թիւնս բազումս արարաք։ եւ յայնժամ ասա-
,, ցից ցնոսա, եթէ ո՛չ երբէք գիտէի զձեզ.
,, 'ի բաց կացէք յինէն ամենեքեան որք գործէիք
,, զանօրէնութիւն ,,։ (Մատթ. Է. 22. 33)։ Ուրեմն հրաշք գործելու չափ հաւատք ունեցողները ալ Աստուծմէ պիտի մերժուին միայն անօրէնութիւն գործելնուն համար։ Եւ ընդհանուր դատաստանին օրը բարեգործութեանց հաշիւը պիտի նայի Տէրն մեր. եւ բարեգործները անանկ համար աշխարհքի սկիզբէն պատրաստուած ար-

քայութիւնը պիտի հրաւիրէ ըսելով , « զի քաղ-
„ ցեայ եւ ետուք ինձ ուտել . ծարաւեցի՝ եւ
„ արբուցէք ինձ „ . եւ այլն . եւ անոնց Հակառակ
վիճակի մէջ գտնուողները պիտի վռնդէ . պատ-
ճառ նայնը բերելով . « զի քաղցեայ եւ ո՛չ ե-
„ տուք ինձ ուտել . ծարաւեցի եւ ո՛չ արբուցիք
„ զիս „ . եւ այլն : ( Մատթ . ԻԵ . 34—45 ) .
Նոյն համար Պետրոս սուրբ առաքեալն ալ կը-
սէ . « ձերովքն հաւատովք ժառանգարարեսջիք զա-
„ ռաքինութիւն „ . եւ քիչ մը վարը կըսէ . « ա-
„ ռաւել փութացի՛ք , զի բարեաւն գործովք
„ հաստատուն զձեր կոչումն եւ զընտրութիւն
„ պահիցէք : Զայս այսպէս արարեալ ո՛չ եր-
„ բէք յանցանիցէք . զի այսպէս առատապէս շը-
„ նորհեսցի ձեզ մուտ 'ի յաւիտենական արքայու-
„ թիւն տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիս-
„ տոսի „ ( Բ . Պետ . Ա . 5 · 10 · 11 ) : Այս-
պէս վկայութիւններ շատ կան սուրբ գրոց մէջ :
Աստուածաշունչ սուրբ գիրքը հաւատքը բաւա-
կան չսեպեր . գործե՛լ ալ կուզէ . եւ այն գոր-
ծերը որ հաւատք չունեցողին համար անպտուղ
են թէ որ նոյն իսկ Աստուծոյ շնորհացը գործը
քեն նէ , Աստուծոյ շնորհօքը արդիւնաւոր կըլ-
լան . ինչպէս որ էրին Կոռնէլիոսի աղօթքը եւ
ողորմութիւնը՝ որ իրեն հաւատոյ առաջնորդ եւ
առիթ եղան :

Բայց Հակառակորդը եւ իր կրօնակիցները մէկ
ո՛չ՝ փրկութեան 'ի ձեռն բարեգործութեան հաւատքը

Հոգեկործան մոլորութիւններուն կարգը կը գտ-
նեն. եւ անոնցմէ մէկը, գուցէ նոյն իսկ Հակա-
ռակորդը. (որովհետեւ առանց իրենց տպած
գրքերուն մէջ Հեղինակի անուն դնելու սովորու-
թիւն չունին. գուցէ Հոն ըսածներնուն վրայ ի-
րենց ալ Հաստատուն կենալիքը խելքերնին չը-
կտրելով) ; Ի՞նչ է Պրոթեստանական Հաւատալիքը խորագրով
տետրակին մէջ՝ իրենց ժողովուրդին սա՛ խրատը
կուտայ: "Ճ՛իշտ դադրեցո՛ւր ընելը. եւ սկսէ՛
,, Հաւատալը, ու Քրիստոսին ապաւինէ որ ամէնքը
,, ինքը ընէ, ու դուն ապահով ըլլաս: Կ՚ըսենք
,, թէ մարդ մը նաւակի մը թիերը քաշէ գետի
,, մը վրայ ճիշդ ան տեղին մօտ՝ ուր որ ահագին
,, կերպով ջուրը վերէն 'ի վար կը վազէ. եւ Հո-
,, սանքը սկսէ դէպ 'ի վար տանիլ զինքը, ու գե-
,, տեզերքը կայնած դիտողները յոյսերնին կտրեն
,, թէ անշուշտ պիտի կորսըվի, ու ամէնքը բար-
,, ձըր ձայնով պոռան՝ թէ ինքը կորսուեցաւ:
,, Բայց շուտով որ չուան մը ձըգվի դէպի ողոր-
,, մելի մարդուն, ու չուանը ջուրին մէջը նաւա-
,, կին քովը մօտիկնայ, Հիմայ ի՞նչպէ՞ս է ատ
,, գործը. բոլոր դիտողները կը կանչե՞ն մի իրեն
,, որ թիերը քաշէ ուժով մը ու պինդ մը ջա-
,, նայ եզերքը Հասնելու. երբոր իր ձեռքին բո-
,, լոր զօրութիւնովը յայտնապէս նաւակը դէպի
,, կործանման կը տանի կոր: Չէ՛՛ չէ՛. Հապա ամ-
,, էնքը միաբերան ու սաստիկ պիտի պոռան՝
,, թէ, Նետէ տուր տա թիերըդ. թա՛ղ տա անոյս

„Զանգերը . բռնէ՛ չուանը ։ Բայց թէ որ ին-„քը թիերը քաշելը ընտրէ նէ . անշուշտ քանի „մը րոպէէն նաւը աներեւոյթ կըլլայ ու կը-„կորսուի „ ։ ( Եր . 5 ) ։ Այս օրինակիս վրայ ը-րած խորհրդածութիւնը՝ միտքերնին մեր ընթեր-քէն աւելի աղէկ կը բացատրէ ։ “ Հիմայ աս „մարդուն իր փրկուելու ժամեան թիերը քաշելը „չէր , հապա անոնք գործածելէն դադրելը . „ինչու որ երբ թիերը կը քաշէր կոր՝ չէկրցաւ „[illegible]ինտ բռնել չուանը ։ Նոյնպէս ալ մեզաւորին „փրկութիւնը ինքը զինքը փրկելու ջանալէն չի-„գար՝ հապա ջանալու դադրելէն . քանզի՝ քանի „որ փրկութեան գործը ինքը կատարել կը յու-„սայ , չի պիտի ապաւինի Քրիստոսին . ուրեմն „չէ՛ թէ ընելը կը պահանջուի , հապա հաւատ-„քը „ ։ Պետրոս առաքեալը կըսէ . “ առաւել „փութացէք , զի բարեացն գործովք հաստատուն „զձեր կոչումն եւ զընտրութիւն պահիցէք „ . բողոքականը կըսէ . “ փրկութիւնը ինքը զինքը „փրկելու ջանալէն չիգար „ ։ Ասէ որ գրոց յայտ-նի խօսքին դէմ խօսողը հերետիկոս կըլլայ նէ՝ Ի՞նչ է Բողոքական հաւատալը անտարակոյս հեղինակն ալ փրկութիւն՝ Յիսուսի բարեգործութեան ընելը հօգէկոր-ծան մոլորութիւններուն կարգը դնող հակառա-կորդն ալ , իրենց կրօնակիցներն ալ մեզի թող ներեն երբ զիրենք հերետիկոս կանուանեմք . Եւ սուրբ գիրքը իր հաւատքին կանոնն է ընտ-[illegible] չպարծին . ահա իրենց հաւատքը իրենց

ցուցուցած կանոնին հետ համեմատեցինք. դա-
կաս եկաւ։

Իրենց ալ ամէն ատենուան հաւատքը այս չէ՞. երբեմն ասանկ [illegible]են. երբեմն ալ կըսեն. մեռ-նողը "այս աշխարհէս ելած ու յաւիտենական "աշխարհը մտած է Աստուծմէ ընդունելու իր "գործքերուն համեմատ՝ ինչ որ այս աշխարհիս "մէջ ըրած է" (Մատթէոս. Գլ. 146. եր. 60)։ Ուրեմն՝ մարդոյս մեռնելէն ետքը յաւիտենական վճ-ճակին որոշումը իր գործերուն համեմատ պիտի ըլ-լայ եղեր, ինչ որ աս աշխարհիս մէջ ըրած է. եւ թէ որ բարի գործք ըրեր է նէ՝ պիտի փրկուի. Այսպէս ըսելուն՝ եւ Քրիստոնէից հին բարեփոխո-ներուն ըսելուն մէջ ի՞նչ տարբերութիւն կայ. որ մեկը աւետարանական վարդապետութիւն՝ եւ միւ-սը հոգեկործան մոլորութիւն կըլլայ եղեր. բո-ղոքական քարոզիչներուն խօսքը լսելու պատգամ բռնողները թէ որ այսպէս տարբերութիւն մը գտներ են նէ՝ մեզի թող ցուցընեն. չէ՞ նէ՝ ի-րենց առաջնորդ բռնելու հաճած մարդոցը մի-օրինակ հաւատք չկրնալ քարոզելը տեսնեն, եւ իրենց հոգւոյն փրկութեանը համար ընելիքնին որոշեն։

Երբ բարեգործութիւնը փրկութեան օգուտ չունենայ նէ՝ չար գործերն ալ վնաս չեն ունե-նար։ Բայց մէջերնին կան անանկներ ալ՝ որ կը-սեն թէ փրկութեան հասնելու համար չարագոր-ծութիւնն ալ օգուտ կընէ։ Անհաւատալի կերե-

մի ատեկայ․ բայց երբ որ իրենց գրքէն ցուցընեմ նէ՝ զարմանքդ այսպէս քարոզիչներու խօսքին հաւատացողներուն պարզամիտ ոգիութեանը վրայ կը դարձընես ։ Ու ցուցունելու գիրքերնիս՝ նոյն իսկ Լութերին գիրքն է ։ Ասիկայ իրենց մէջը աստուածային եւ քրիստոնէութիւնը աւերող բաներէն մաքրելու համար յատկապէս Աստուծմէ ընտրուած մարդ կը սեպուի․ եւ թէ որ երբեմն իրենց պաշտպանին դէմ բան մը կարդանէ տոր գրածներուն մէջ՝ կըսեն թէ քիչ մը հռոմէականութեան հետք մնացած էր քովը․ ամէն նախապաշարմունքէ տակաւին կատարելապէս ազատ չէր ։ Բարեգործութեան կամ չար գործքերու վրայ ըսածները ո՛չ հռոմէական եկեղեցւոյ եւ ո՛չ սուրբ գրոց կամ ընդհանուր եկեղեցւոյ դաւանութեանը համեմատ չըլլալուն համար՝ այդ խօսքը այս կէտիս վրայ չեն կրնար ըսել․ իրեն Հռոմէն զատուելէն ետքը ընդունուած մտքին արդիւնքն է ։ Ասիկայ Վէլէր անուն բարեկամին գրած մէկ նամակին մէջ հետեւեալ խրատը կուտայ․ "փոր-
„ձութիւններ կըկրես․ պէտք է վերջացընել ։
„ Երբ սատանան քեզ փորձելու կուգայ՝ ախրե-
„ լէս․ շատ մը խըմէ, ցաթկըռտէ՛, խենթուկ-
„ ցի՛ր, սատանային հակառակ, եւ անիկայ ձա-
„ Թեցընելու համար․ մեղանչէ՛ ։ Թէ որ սատա-
„ նան քեզի ըսէ․ խըմելէն ետ կը կենա՞ս, պա-
„ տասխանէ՛․ որովհետեւ դուն ինծի մի՛ խըմեր
„ ըսիր՝ լեցուն գաւաթներո՛վ պիտի խըմեմ ա-

,, առաջրէն Յիսուսի Քրիստոսի պատուոյն ։ Ին-
,, ծի պէ՛ս ըրէ. ես սատանան բարկացընելու
,, համար է որ շատ կուտեմ, շատ կը խըմեմ, շատ
,, կը զուարճանամ սեղանին գլուխը ։ Կուզէի մէկ
,, նոր մեղք մը գտնել, (ըսել է որ մինչեւ այն
,, ատենը գտնուած մեղքերը ամէնն ալ ըմընցու-
,, ցեր է). որպէս զի սատանան իր վնասովը հաս-
,, կընայ որ մեղք ըսուած բաներուն մէկն ալ բա-
,, նի տեղ չեմ դներ. եւ ինծի խղճմտանքի բեռ
,, ալ չըլլար ։ Երբ սատանան մեզ նեղելու կու-
,, գայ՝ տասնաբանեայ պատուիրանը մէկդի թող
,, կենայ ։ Ինէ որ ականջս 'ի վար ըսէ թէ՝ բայց
,, դուն կը մեղանչես կոր, մահուան եւ դժոխքի
,, արժանի՛ ես, այո՛, ճշմարի՞տ կըսես, կըսեմ.
,, ես ալ առիկայ աղէկ գիտեմ. բայց դու ի՞նչ
,, ըսել կուզես ։ — Բայց հանդերձեալ աշխարհ-
,, քը պիտի դատապարտուիս ։ — Ասկէ սուտ է.
,, ես մէկը կը ճանչնամ որ չարչարուեցաւ եւ ինծի
,, համար վճարեց ։ Անոր Յիսուս Քրիստոս որ-
,, դի Աստուծոյ կըսեն. այն ո՛ւր է նէ՝ ես ալ հոն
,, պիտի ըլլամ ,, ։ (Լեղերէնէ տէ Վէտտէ. Լու-
թէր Լուտերի. Հատոր. Դ. եր. 188) ։ Զգիտեմ
Լութերի այսպէս նամակները ինչո՞ւ հայերէնի
չեն թարգմաներ ու տպեր. այսպէս ընեն նէ՝
իրենց հետեւողները անշուշտ կաւելնան. որով-
հետեւ այսպէս մեղքերով խիղճերնին ծանրացած
մարդիկ ո՛րքան կան նէ՝ իրենց կը յարին ։ Ահա՛
այսպիսի խօսքերն են հոգեկործան մոլորութիւն—

ները. եւ ասոր հակառակ՝ փրկարար քարոզապե-տութիւն է սրբազան կաթուղիկոսին եւ ուղղա-փառ եկեղեցւոյ սովորեցուցածը սուրբ գրոց հա-մեմատ՝ թէ հաւատքը առանց բարեգործութեան եւ բարեգործութիւնը առանց հաւատքի անօ-գուտ են ։

## ՅՕԴՈՒԱԾ Ժ

Կարգաւորներուն չամուսնանալը

Այս բանիս վրայ հակառակորդը երկար խօ-սեր է ալ նէ՝ մենք ձեռքերնուս եկածին չափ կարճ խօսքով լմնցընելու պիտի նայինք ։ Այս խօսքերնիս ամփոփելու համար երկու հատուած կը բաժնեմք. առաջինը՝ չըկարգուելուն մաքուր վիճակ ըլլալուն վրայ ։ Երկրորդը՝ կարգաւորնե-րուն կարգ առնելէն ետքը չամուսնանալուն վրայ ։

### Ա. Չկարգուիլը մաքուր վիճակ է ։

Այս խօսքիս հակառակորդը հաւանութիւն չը-տար. որ յայտնապէս գրած է իր Ճշմարտախօսու-թեան մէջ (եր. 71), թէ կուսակրօնութիւնը "նը-ուաստ, աղտեղի, արհամարհելի եւ անընտանի

,, միճակ է ,, ։ Բայց ասիկայ կերեւի թէ Հակառակորդին առանձին իր կարծիքն է . որուն ուրիշ բողոքականները համախոհ եղած պիտի չըլլան . վասն զի ինքը նոյն տետրակին մէջ ուրիշ տեղ մը (Եր . 43) կըսէ . " ոմանք բողոքական քարոզ-
,, չաց ամուսնացեալ են , իսկ ոմանք չեն ։ Զա-
,, նոնք պարտաւորող օրէնք մը չկայ ,, ։ Թէ որ բողոքականները ամէնն ալ կուսակրօնութիւնը նըուաստ եւ աղտեղի եւ արհամարհելի եւ անբնական վիճակ մը սեպէին նէ՝ ասանկ վիճակի մէջ մնալ թող չէին տար իրենց քարոզիչներուն , որոնք մաքուր եւ պատկառելի վարք ալ պիտի ունենան ժողովրդեան առաջը ։ Ու պարզապէս երբ ամէն բողոքականներն ալ Հակառակորդին պէս ըսէին նէ՝ հարկ կըլլար մեզի ըսել թէ ամէնքն ալ տգէտ են ։ վասն զի կուսակրօնութիւնը կամ առանց ամուսնանալու զգաստութեամբ ապրիլը չէ՛ թէ միայն տեառն մերոյ եւ սուրբ առաքելներուն եւ անկէց ետքը ընհանուր եկեղեցւոյ մաքուր գիտցած վիճակն է . այլ եւ հեթանոսներուն ալ ։ Մենք արովհետեւ մանաւորապէս սրբազան կաթուղիկոսին Հակառակորդին գրածները քննելու առած եմք , ուրիշ բողոքականները մէկ դի թողունք որ անոնք ալ իրենց կրցածին չափ իրենց այս կրօնակիցը խրատեն , եւ մենք ցուցընեմք որ իր ըսածը սուրբ գրոց խօսքին հակառակ է ։

Երբ որ տէրն մեր՝ ամուսիններուն իրենց կնոջմէն թողուելու թոյլտուութիւն ընող մովսի-

ռական ] օրէնքը ] վերցուց, աշակերտները ըսին.
« Թէ այդպէս ինչ վնաս իցէ ընդ այր եւ ընդ
» կին, լաւ է չամուսնանալ »: Տէրն մեր պա-
տասխանեց Թէ՝ այդ բանը միայն որ՝ որ տրուած է
նէ անիկայ կրնայ ընել. Եւ որպէս զի ասանկ ըսե-
լը բնական կամ 'ի ծնէ ներքինիներուն համար
չհասկըցուի՝ երեք տեսակ ներքինի որոշեց. մէ-
կը մօրմէ այնպէս ծնածները. երկրորդը մարդու
ձեռամբ եղածները. եւ երրորդը՝ իրենք զիրենք
Աստուծոյ արքայութեանը համար ներքինի ընող-
ները: (Մատթ. ԺԹ. 10—12): Եւ այս վեր-
ջին տեսակը անոնց համար կը հասկըցուի եւ ա-
նոր տեղն հասկըցուած է, որ Աստուծոյ աւելի
ազատօրէն եւ անզբաղ ծառայելու համար կար-
գուելէն բոլորովին կը հրաժարին. որպէս Թէ
ներքինի եղած ըլլային, եւ ասոնց այն ժուժկա-
լութեանը համար էր որ՝ որ տրուած է նէ ըսելը:
Եւ Աստուած այդպէս նուաստ եւ աղտեղի եւ
արհամարհելի եւ անբնական վիճակի մը մէջ յա-
րատեւելու համար շնորհք չտար մարդու:

Հակառակորդը կըսէ. « Ոսկեբերան. Եւսե-
» բիոս. եւ Ամբրոսիոս մինչեւ անգամ խոստովա-
» նեցան Թէ բաց 'ի Պօղոսէ ամենայն առաքեալք
» ամուսնացեալ էին » (Ընդդիմախ. եր. 47): Կե-
րեւի որ նոյն հակառակորդը իր ըսած հայրա-
պետներուն եւ վարդապետներուն վկայութեանը
ինքն ալ շատ վստահութիւն չունէր. որ ատկէց
մը առաջ ամուսնացեալ առաքեալներուն համ-

բանքը մինչեւ մէկի հինչեցուց ։ (Ընդդիմախ. եր. 46)։ Սուրբ աւետարանին մէջ Պետրոս առաքելոյն ղըքանչ ունենալը գտեր էր. ուրիշներուն համար բան մը չէր գտեր գրուած. եւ իր գրածը սրբ. ոզան կաթուղիկոսին ցուցընելով կըսէր. "կը- „ համարձակինք ըսելու թէ ալ ասկէ սովրելէն „ ետքը պիտի ընդունի թէ առաքելոյ մէջէն զո- „ նէ մէկը ամուսնացած էր „ ։ Սուրբ Պօղոս առաքեալէն զատ սուրբ Յովհաննէս աւետարանիչըն ալ ամուսնացած չէր. եւ ասիկայ կըգտնեմք իրեն Պրոխորոն աշակերտին գրած պատմութեանը մէջ. ուր կըպատմէ թէ սուրբ աւետարանիչը աստուածային ազդմամբ իր մահուան մօտենալը իմանալով երբ գերեզմանը փորել տուաւ եւ մէջը մըտաւ, գոհացողական աղօթքներուն կարգը ըսաւ. "ո՛ որ զիս պահեցեր մինչեւ 'ի ժամանակս „ յայս՝ անմերձ 'ի խառնակութենէ կանանց „ ։ *

* Սրբոյն Յովհաննու աւետարանչին պատմութիւնը Պրոխորոն շինած է՝ և մեր նախնիքը Հայերէնի թարգմանած են ։ Քննիչները հնութեանը վկայութիւն կուտան ։ Սուրբ Աթանասէն առաջ կար կըսեն, բայց հարազատութեանը կըկասկածեն ։ Հիմակուան յունարէնը՝ որուն լատին թարգմանութիւնն ալ կայ. Հայերէնին հետ բաղդատելով դտանք որ համառօտած է, վերջէն ալ պակաս է և ասոր նայելով կասկած ծագեր է. Հայերէնը տեսնէին նէ այդ կասկածը չէին ըներ կըկարծեմք ։

Սուրբն Օգոստինոս եւ սուրբն Հերոնիմոս ալ սուրբ աւետարանիչը՝ կոյս էր կըսեն ։ Իսկ ընդհակառակն՝ կան որ սուրբ Պօղոս առաքեալն ալ կարգուած էր կըսեն ․ եւ լծակից որ կը յիշէ սուրբ առաքեալը (Փիլիպ․ Դ․ 3), իր ամուսինն ըսել կը հասկընան ։

Բայց մենք հակառակորդին կը շնորհեմք որ առաքեալներն ալ ամուսնացեալ էին ըսէ ․ ատկէց ի՞նչ կելլէ ․ իրեն ո՞վ է ըսեր թէ ուղղափառաց եկեղեցին ամուսնացեալ մարդիկը քահանայ չըներ ։ Հայերը եւ յոյները եւ ասորիները եւ ուրիշ արեւելեան ազգերը երկու կարգ քահանայ ունին ․ ամուսնացած եւ կուսակրօն ․ Հռոմայ եկեղեցին թէպէտ եւրոպական ազգերուն մէջ ամուսնացեալ քահանայ չունի՝ բայց մարոնի ազգին քահանաները որ ամուսնացած են՝ իբրեւ քահանայ կընդունի եւ քահանայական պաշտօնէն եւ սուրբ պատարագ մատուցանելէն չզրկեր՝ միայն թէ առ ժամանակեայ կերպով ամուսնութենէ ժուժկալած ըլլան ։

Բանն անոր վրայ է՝ թէ առաքեալները առաքելութեան պաշտօնի ընտրուելէն ետքը իրենց ամուսինը քով ըրի՞ն կը պահէին ամուսնական օրինօք՝ թէ չէ․ սրբազան կաթուղիկոսը կըսէ թէ ամուսնական կեանքէ հրաժարուած էին․ եւ վկայ ունի սուրբ Պետրոս առաքեալը՝ որ Քրիստոսի ըսաւ․ «Ահաւասիկ մեք թողաք զամենայն, եւ եկաք զկնի քո» (Մատթ․ ԺԹ․ 28)․

եւ Քրիստոսի խօսքէն կը հասկընանք, որ սուրբ առաքեալը կինն ու որդիքը եւ ընտանիքը ձգած ըլլալը կը հասկըցընէր. որովհետեւ այսպէս պատասխանեց. «ամէն ասեմ ձեզ. եթէ ոչ ոք է, „ որ եթող զտուն կամ զծնողս կամ զեղբարս կամ „ զկին կամ զորդիս վասն արքայութեան Աստու-„ ծոյ, եթէ ո՛չ առնուցու բազմապատիկ 'ի ժա-„ մանակի յայսմիկ. եւ յաշխարհին որ գալոցն է, „ զկեանսն յաւիտենականս ժառանգեսցէ „: (Ղուկ. 29. 30): Ի հարկէ ասոնք ունէին առաքեալները որ թողուցին. եւ հակառակորդն որ սրբոյն Պետրոսի կին ունենալն ու զոքանչ ունենալը սրբազան կաթուղիկոսին կը ցուցընէ նէ ստուգելու համար՝ իմաստակութիւն կընէ:

Ուրիշ իմաստակութիւն մը կընէ երբ ցուցընել կուզէ թէ առաքեալները քարոզութեան ատենը իրենց կինը հետերնին կը պըտըտցընէին. «Միթէք չէ՞ կարգացած՝ կըսէ, առաջին կորըն-„ թացւոց իններորդ գլուխը „. եւ որ բանն ըլլալը քիչ մը վարը կը ցուցնէ. «քիչ մըն ալ „ նայինք Պօղոս ի՞նչ կըսէ: Միթէ մենք իշ-„ խանութիւն չունի՞նք Քրիստոսով քոյր եղող կը-„ նիկ մը մեր հետը պըտըտցընելու „: Ա. Կորնթ. Թ. 5: (Ընդդիմախ. եր. 46)՛: Այո՛. կարգացեր է. բայց գրաբարին մէջ. որ գրուած է. «մի „ թէ ո՞չ ունիցիմք զքոյրս կանայս շրջեցուցա-„ նել ընդ մեզ „: Երբ բողոքականները սուրբ առաքելոյն այս խօսքէն իրենց ըսածին հասա—

տուֆեանը՝ համար հետեւութիւն մը հանելու պարագայի մէջ չըլլան նէ՝ առաքելական բանը չետօք կը թարգմանեն. եւ սանկ թարգմանուած են նոր կտակարանի աշխարհաբար թարգմանութեանց մէջ որ 1842 թուին Իզմիր տպեցին. «Ո՞ւր թէ „ մենք իշխանութիւն չունի՞նք քոյրեր կիներ „ մեր հետ պտտցընելու„: Ինչո՞ւ համար 1842 ին տպագրեր կիներ նշանակող կնոջ կանայս բառերը 1880 ին Պոլսոյ տպր եղող կնիկ մը նշանակել ըսկըսեր է. Հայերէն քերականութիւնը տասն եւ ութը տարուան մէջ ա՜սպէս փոփոխութիւն մը կրել եւ յոգնականը եզակի նշանակութիւն ունենալ՝ Նորանշան բան մըն է: Իսկ այս կարգիս մէջ Պոլսոյ բառը ի՞նչ բան ունի, որ սուրբ առաքելոյն խօսքին մէջ չկայ. որկէ՞ գտան: Ինչէ՞ն գիտցան որ այն հետերնին պտըտցուցածնին առաքեալներուն քոյր մարմնոյ քոյրերը չէին: Մէկ տեղ մը հակառակորդը սրբազանին համար գանգատ կընէ որ իրենց ըսած խօսքը իրենց վրայ ձգեր է. «սանկ ամէնքն ալ կըսէ, ալք եպիս„ կոպոսին գրքին մէջ գրուած են չակերտներով, որ„ պէս ընթերցողը կը կարծէ թէ ուրիշ գրքէ մը „ քաղուած ըլլան„: (Ընդդիմ. եր. 41): Եւ ասանկ ընելը չարամիտ ստախօսութիւն կանուանէ: Հոս երբ ինքը նոյնպէս չակերտներով առած խօսքին մէջ Պոլսոյ բառը կաւելցընէ՝ եւ յոգնական երկու բառ եզակի կը թարգմանէ. եւ սանկ ամէնն ալ սուրբ առաքելոյն այնպէս գրած է կար-

ծեցընել կուզէ նէ՝ սուրբ Քրիստոսի ճշմարտու-թեան չեմք կրնար ըսել. Հակառակորդին վրայ այնպէս արտօնութիւն մը չեմք ճանչնար որ սըր-բազան կաթուղիկոսին ըրած Քրիստոսի աւանդութեա-նը ինքն ընէ նէ Քրիստոսի ճշմարտութեան ըլլայ։ Ասանկ բաներն են որ սրբազան կաթուղիկոսին եւ մեզի ամենուս ալ իրաւունք կուտան ըսելու թէ՝ " Հիմայ այս բողոքականները միայն եկան. ,, որ ուղղափառ քրիստոնեայներուն սուրբ ժո-,, ղովքներով ընդունած սուրբ գիրքերը աղաւա-,, ղեն ,, (Նոր ժող. եր. 121). Եւ ասանկ ը-նելնուն տուած պատճառն ալ ստոյգ կը ցուցընեն որ կըսէ. անոր համար ասանկ կընեն որ " իրենց ,, նորահնար աղանդը դիւրաւ հաստատեն ,, (նոյն եր. 123)։

Սուրբ առաքելոյն խօսքը ծուռ թարգմանելով հակառակորդը իր միտքը դրածին չըհասնիր։ Ի-րեն դիտաւորութիւնն էր ցուցընել թէ առաքեալ-ները իրենց կնիկը հետերնին կը պտըտցնէին. բայց առաքելոյն ըսել կուտայ՝ կնիկ մը. որ անորոշ բան մըն է. եւ կընշանակէ՝ կին մը ո՞վ եւ որո՞ւ կըլ-լայ նէ ըլլայ։ Ուստի թէ որ հակառակորդը ը-սել կուզէ թէ՝ առաքեալները ո՛ր եւ իցէ կին ի-րենց հետերնին ամուսին կը պտըտցնէին, իրենցը կամ ուրիշինը չխտրելով. մեզի այս վկայութիւ-նովս չկրնար հաւատացընել թէ սուրբ առաքեալ-ները իրենց ամուսինը քովերնին կը պահէին եւ ամուսնական օրինօք կը վարուէին.

Չէն մը բառին այսպէս անորոշ նշանակութիւն մը ունենալը չգիտեր Հակառակորդը. անոր համար իրեն թարգմանած վկայութիւնովը յաղթանակ կանգնած է մը պէս խոշորկէկ բերդել կըսէ. «ուղղագրութ քննադատութիւն մը ո՛ր կող-
«մը դառնայ նէ՝ կըսէ, աս բնաբանէն ուրիշ
«իմաստ մը չինէր* հանել. միայն աս թէ՝ ա-
«ռաքեալք ամուսնացեալ էին. եւ Հեթեթէնք կը պը-
«տըռչընէին իրենց կնոյէը» (Ընդդիմխօսք. եր 47)։ Այն ուղղագրութ բաւած քննադատութիւնը թէ որ առաքելոյն խօսքին բնագրին վրայ պիտի ըլլայ նէ՝ իր բաւած իմաստը մարդ չկրնար հանել իրմէ զատ. Նոյնքան միայն կը հասկընայ որ՝ առաքեալները իրենց քարոզութեանը օգնական կնիկ մարդիկ ալ կը պըտըտցընէին. որովհետեւ տունները համարձակ մուտ ունենալու եւ կանանց հետ տեսնուելու իրենց պատեհութիւն մը չունէին. Մինչ որ մէկը այս խօսքը ամուսնական օրէնք վարուելու վրայ հասկընալ ուզէ նէ՝ չէն մը բառը (որ է Հակառակորդին թարգմանութիւնը) զինքը կը կասեցընէ. իմացընելով որ աոր տակէն՝ առաքեալներուն միջ կնոյք համարուող էին ըսել կ'ելլէ.

* Այս չինէր բառը Հակառակորդն ալ նոյն գըրով գրեր է. ամէն կըլլար որ տեղերակին պարունակած ամէն սուտ խօսքերն ալ սանկ նոյն գըրով ճանչցունէր.

Հակառակորդին այս առարկին մէջ կը տեսնեմք որ տրամաբանական գիտութեան կողմանէ բողդ չունի. եւ ուղղադատ քննադատութիւնն ալ տրամաբանութեան կցորդ ըլլալուն համար անոր ալ տկար է։ Այսու ամենայնիւ կուզէ որ ամէնն ալ իրեն պէս տրամաբանեն. եւ չիտակ տրամաբանողները եւ սուրբ գրոց միտքը չիտակ հասկըցողները եւ չիտակ հետեւութիւն հանողները կը մեղադրէ. «ամօթ չէ՞ արք եպիսկոպոսի մը՝ ,, կըսէ, որ աստուածաշունչին եւ եկեղեցւոյ պա- ,, մութեան վրայ այնպիսի ագիտութիւն կը յայտ- ,, նէ աշխարհի առջեւ ,, . (եր. 47. 48). Մենք այս երկու բաներուն մէջն ալ հակառակորդին քաջ հմտութիւնը տեսանք. որ սուրբ գրքին խօսքը իր մտքին կը յարմարցընէ եւ կը ծըռէ. եւ եկեղեցական պատմութենէն ալ՝ չէ՛ կըցած սորվիլ թէ առաքեալներուն քանի՞ հատը ամուսնացած էին. պեղագեան աղանդը ի՛նչ էր. քրիստոնէական նախնի եկեղեցին ո՞ր գիրքերը իբրեւ աստուածաշունչ կընդունէր. սրբոց մատունքներուն եւ պատկերներուն յարգութիւն կուտա՞ր թէ չէ՛, սըրբոց բարեխօսութիւն կընդունէ՞ր թէ չէ՛։ Այս բաները հակառակորդը թող իրեն պարծանք ըրընէ. ասոնցմով թող բոլոր աշխարհի յայտնէ իրեն աստուածաշունչին եւ եկեղեցւոյ պատմութեան վրայ ունեցած հմտութիւնները. որպատզանքն ու մենք անոր ագիտութիւնովը կը բաւականանամք։

### Բ. Կարգաւորներուն ժուժկալութիւնը ։

Սրբազան կաթուղիկոսը ցուցընելու համար որ կարգաւորները ամուսնանալէն հրաժարելու են, Պօղոս առաքելոյն Ա. Կ. 26 խօսքը մէջ կը բերէ ։ Հակառակորդը՝ որ երևեմն սրբազանին խօսքերէն իր բանին չեկածները կը ծածկէր. այս վկայութիւնս կառնէ. եւ քիչ մըն ալ ընդարձակ կը թարգմանէ, 25 տունէն մինչեւ 33 տունը ։ Նոքը կըսկըսի տրամաբանելու. եւ մեզի նոր առիթ մը կուտայ իր տրամաբանութեան հրաշալի զօրութիւնը աղէկ մը գիտելու ։

Նախ եւ առաջ չհասկընալ կը ցուցընէ թէ այն վկայութիւնը " ի՛նչ խելքով եւ ի՛նչ սկզբուն-
" քով ընտրած է եկեղեցականաց ամուսնութիւնը
" վտարացնելու * (Ընդդիմախօս. եր. 49) ։ Նոքը

* Թէ որ այս վտարացընել բառը հակառակորդին գրչէն ելածն է նէ՝ հայերէն ալ չգիտեր, վտարացընել բառին ի՛նչ նշանակելուն տեղեակ չէ ։ Ասոր հակառակ նշանակութիւն ունեցող բառ մը պէտք էր իրեն. և անվտարացընել բառ ալ չունիմք. որ ըսեմք թէ գրաշարը ան վանկը ձգեր է սխալմամբ. և սրբագրողն ալ այդ սխալը չէ՛ տեսեր ։

չհաւնիր նէ՝ կըսպասենք իրմէն սովրելու թէ ար-դեօք տէրն մեր յիրաւի սովրեցո՞ւց որ ամէն մարդ իր կինը պարտական է ատելու ։ Բայց այն ալ աղէկ մը չեմք հասկընար թէ այս փաստը ինչո՞վ սրբազան կաթուղիկոսին հակառակ կու-գայ ։ Ալը կարծէ՞ արդեօք թէ սրբազանը անանկ կուզէ որ մէկ ամուսնացեալ մարդ մը քահանայ ըլ-լայ նէ՝ այն օրէն սկըսի կնոջը դէմ ատելութիւն մը տածել սրտին մէջ. անոր թշնամի ըլլալ. եւ այլն ։ Թէ որ այդպէս կարծիք մը ունի նէ՝ սըր-բազանին խօսքերէն այդպէս բան մը ցուցընելու է. չէ՛ նէ՝ այս փաստը բոլորովին անպիտան է ։

Աս երրորդն բաւական ըլլայ առ երկրորդն ը-նանձնիս ։ այս երկու փաստը մի եւ նոյն է. միայն փաստերուն համրանքը շատցընելու համար զատ գրեր է ։

Աս չորրորդն կը պատասխանեմ ։ Քրիստոսի տէրն մերոյ խօսքը բոլոր ընտանիքներէն զատ-ուելու կը վերաբերի. չէ՛ թէ միայն ամուսնա-կան վիճակէն. եւ այն ալ՝ չէ թէ զանոնք ատե-լու կերպով, այլ զՔրիստոս տէրն մեր անոնցմէ աւելի սիրելուն համար ։ Ասով ամենայնիւ հո-գեկորոյս վիճակի մէջ չէ՛ հայոց եկեղեցին ։ Բայց տեսնել պէտք է թէ ինչէ՞ն կարծեր է հակառա-կորդը թէ հայաստանեայց եկեղեցին այդպէս գէշ վիճակ մը ունի ։ Ասիկայ տեսնել պէտք է. վասն զի ասով ալ կը հասկըցուի թէ, հակառա-կորդը հայաստանեայց եկեղեցւոյն ծէսերուն եւ

պատմութեանը որքան հնութիւն ունի ։ Առաջին երեք պատճառ կը ցուցընէ ։ Առաջին՝ որ « պապը կամ ամուսնութիւնը եկեղեցւոյ խորհուրդներէն մէկն է » երկրորդ՝ որ « քահանայից վրայ ալ պարտք դրած է եկեղեցին կարգուելու » ։ Եւ երրորդ՝ որ « ամուրի անձն մը քահանայական կարգ վայելելու պատիւը չկրնար ունենալ » ։ ( Ընդդիմ. եր. 50 ) ։ Առանց առաջինը այս խօսքերուն հետ բնաւ կապակցութիւն մը չունի ։ Բողոքականները՝ որ պապը խորհուրդներուն կարգը չեն ընդունիր, գո՛նէ աստուածադիր սահման մը կը ճանչնան, եւ ասոնք որ ամէն մարդիկ ամուսնանալու պարտական կը սեպեն, պարտաւորող օրէնք մը չունին եղեր իրենց քարոզիչներուն համար անգամ, որ ամուսնանան . ( Ընդդիմ. եր. 43 ) . ասով կը խոստովանին որ ամուսնութիւնը ամէն մարդ պարտաւորութեան տակ դնող օրէնք մը չէ ։ ուստի առաջին պատճառը խօսքին նիւթոյն հետ յարաբերութիւն եւ յարմարութիւն չունի ։

Երկրորդ պատճառը սո՛ւտ է բոլորովին . եկեղեցին քահանաներուն վրան պարտք մը դրած չէ ամուսնանալու *։ Եւ ասոր վկայ թէ որ կամք ը-

* Մաշտոցին մէջ փոքր աստիճանները տալու արարողութիւններուն վերջը յատուկ գրուած է որ այն աստիճաններին առնողը կրնայ ամուսնանալ ։ անկէ բարձր աստիճան առնողները չեն կրնար ։

ներն նէ իրենց մէջ կը գտնեն. Թէ որ քահանայները կարգուելու պարտաւոր ըլլային նէ՝ երիցակիններին մեռնելէն ետքը ինչո՞ւ միայն լոկ ամուսնանալու համար իրենց եկեղեցին ձգելու եւ բողոքական ըլլալու էին. Թէ որ մէկը իրենց կամքին կատարմանը արգելք մը ելլէր նէ՝ կրօնային զերենք ամուսնանալու պարտաւորող օրէնքը ցուցընելով անոր բերանը գոցել. Թէ որ քահանայները կարգ առնելէն ետքը ամուսնանալու պարտաւորող օրէնք չկայ նէ՝ անկէց առաջ ամուսնանալու սովորում մըն ալ չկայ. Քահանայ ըլլալու մարդը կարգ առնելէն ետքը չկրնար ամուսնանալ. ուստի ասիկայ կարգ առնել ուզող մարդուն իմաց կը տրուի. կամ մանաւանդ՝ ինքն առաջուց գիտէ. (ազգին մանր տղայքն անգամ ասիկայ գիտեն). Թէ որ ամուսնացեալ քահանայ պիտի ըլլայ նէ՝ առաջ կը կարգուի. եւ ժամանակ մը ետքը Թէ որ կարգաւորութեան արժանաւորութիւն մը ցուցընէ նէ վարքին եւ գիտութեանը կողմէն՝ քահանայ կը ձեռնադրուի. Ամուսնանալ չուզէ եւ քահանայ ըլլալ ուզէ նէ՝ անոր ալ արգելք մը չըլլար. միայն Թէ ուխտ ընէ մինչեւ 'ի մահ կուսակրօն մնալու եւ բնաւ չամուսնանալու.

Երրորդ պատճառն ալ սա է. ամուրի անձերը, այսինքն չամուսնացածները բնաւ չկար-

-ուստի կիսասարկաւագին և սարկաւագին և քահանային՝ և այլն, ամուսնանալու պարտք չկենալէն —— հրաման ալ չկայ.

պնդելու ախտը ընկլէն ետքը՝ քահանայ ալ կըլլան՝ քահանայական պատիւն ալ ունին . քահանայութեան կարգն ալ կը վայելեն . մկրտութիւն կընեն . խոստովանութիւն կընեն . արձակում կուտան . պսակ կընեն . ննջեցեալ մը պատահի նէ յուղարկաւորութեան պաշտօնը կը կատարեն . սուրբ պատարագ կը մատուցանեն . քահանայական կարգին ո՞րն է որ չեն կընար ընել : Մ՚էկ չկըրնալ մը կայ . բայց շատ հակառակն է : Ամուսնացեալ քահանայ մը՝ քանի՛ որ երկցակինը կենդանի է եւ իրեն բնակակից, գլուխը վեղար դընելու եւ վարդապետութեան աստիճան առնելու կարող չէ՛ . եւ եկեղեցական կարգի մեծագոյն պատիւները այս վարդապետութեան աստիճանը ունեցողներուն կը տրուին . քաղաքներու եւ վանքերու առաջնորդ անոնցմէ կըլլան . եպիսկոպոս, պատրիարք, կաթողիկոս, անոնցմէ կըլլան . եւ ամուսնացեալ քահանայ մը՝ որ ամուսինը կենդանի ըլլայ, բայց միակամ հաճութեամբ իրարմէ զատուած ըլլան մշտնջենաւոր ժուժկալութիւն ուխտելով . ինչպէս որ ըրաւ սուրբ Լուսաւորիչ հայրն մեր եւ ուրիշներն ալ, եւ այսու ամենայնիւ ինքը վեղար դրած եւ վարդապետութեան աստիճան առած չըլլայ նէ՝ այս պատիւներուն մէկին չհասնիր : Ահա այսպէս հակառակորդը հայոց եկեղեցին հոգէկորոյս մոլորութեան մէջ ինկած ցուցընելու համար բերած երեք պատճառներուն մէկը բանին անյարմար գտնուեցաւ .

միա՛ս երկաթն՝ որ քիչ մը պիտի յարմարէին նէ՝ բաղդաւորին սուտ ելան ։

Ըստ Հինգերորդն կըսեմ . ինչէ՞ն գիտցեր է Հակառակորդը որ առաւտն մերոյ խօսքը որ ընդ-բաղդան կաթուղիկոսը վկայութիւն տուած է , " Ա- ,, մենեւին վերաբերութիւն չունի աւետարանական ,, քարոզչութեան վիճակին եւ պաշտօնին . այլ ,, միայն կուսուցանէ Քրիստոսի աշակերտ ըլլալ ,, անձնուրացական ոգւով ,, ։ Ու այսպէս ոգի մը չունեցող մարդը ի՞նչպէս քարոզչութեան վիճա-կի եւ աստիճանի յարմար կըլլայ ։ Գիտի ըսէ թե-րեւս՝ որ աւետարանական քարոզիչները այդ ոգին ունենալու են . բայց այդ ոգին ունեցողներն ա-մէնն ալ աւետարանական քարոզչութեան վիճա-կին եւ պաշտօնին չեն հասնիր ։ Նոյնը մենք ալ կըսենք . ամէն մարդ կըրնայ մինչեւ ՚ի մահ կու-սակրօն կենալ ընտրել . բայց ամէն կուսակրօնի հարկ չէ՛ կարգաւոր ըլլալ ։ Միայն սա կաւելցը-նեմ որ եկեղեցւոյ առաջին դարերէն ՚ի վեր երբ որ հնար ըլլար՝ կուսակրօնները աւելի ընտրու-նելի կըլլային քահանայական կարգի , քան թէ ա-մուսնացեալները . բայց ամէն ատեն եւ ամէն քր-րիստոնեայ ազգերուն մէջ՝ առաքելոց ժամանակէն սկսելով , հաստատութեամբ պահուած էր որ՝ կարգ առնողները թէ որ ամուսնացեալ ըլլային , եւ կարգ առնելնուն ետքը ամուսինները մեռնէին նէ՝ ամուսնանալու հրաման չկար ։ Արքաղան կա-թուղիկոսը կըսէ . Քրիստոս տէրն մեր երկինից առ-

քայութեան համար կամաւ իրենք իրենցմէ ներքիններ կան ըսելէն ետքը " չեմք լացած եւ չեմք
" կարդացած ոչ սուրբ գրքին մէջ եւ ոչ ալ ե-
" կեղեցական պատմութեանց մէջ, որ առաքեալ-
" ներէն մէկը ունեցաւ կին կամ որդիք եւ կամ թո-
" ռունք, եւ կամ այս որ առաքելոյն կինը մեռաւ
" եւ նորէն կին մը առաւ ,, (Խորհ. ժողով. եր. 45)։ Ըսպասեմք հակառակորդէն՝ որ իրեն սուրբ գրոց եւ եկեղեցական պատմութեանց հմտութիւններովը մեզի այդպէս մէկը ցուցընէ։ Մենք սրբազան կաթուղիկոսին չափ խստապահանջ չեմք. ցուցուցածը թող առաքեալներէն չըլլայ, հին հայրապետներէն ըլլայ, այն ալ կընդունիմք։ Բայց Պետրոս առաքեալը Քրիստոսէ առնանէ մինչ վերոյիշեալ խօսքը լսելէն առաջ կին եւ զաւակ ունի եղեր, անիկայ այն մեր խնդրոյն պատասխան չըլլար. Ը. Կորնթ. Թ. 5. խօսքն ալ մեր խնդրոյն ամենեւին չդպչեր. միայն հակառակորդին սուրբ գրոց վրայ ըրած խարդախութիւնը կը ցուցընէ։

Հակառակորդը հին առանձին այդպէս օրինակ մը գտնելէն յոյսը կտրած է. բանը ուրիշ վարպետութեան մը կը դարձնէ. Կըսէ. " վտանգա-
" լից տառապանաց եւ կատաղի հալածանաց ա-
" տեն անտարակոյս ամուրի վիճակը ընտրելի է ,,։ (Ընդդիմախ. եր. 43)։ Բայց ինքն ալ գիտէ որ այն կատաղի հալածանաց խիստ կատաղի ժամանակն էր առաքելոց ժամանակը. եւ իր ըսածն

դէմ չը՞գար մի ըսելը թէ "բաց 'ի Պօղոսէ ա-,, մենայն առաքեալք ամուսնացեալ էին ,, (անդ. եր. 47)։ Կը յիշեցընեմք իրեն՝ որ այդ կատաղի Հալածանաց ժամանակը մինչեւ չորրորդ դարուն սկիզբը տեւեց. ըսել է որ՝ մինչեւ այն ատենը ամուրի կենալը ընդունելի էր. բայց ինքը կըսէ որ՝ "չորրորդ դարուն սկսուեցաւ պաշտպանել ,, անամուսնութիւնը ,, (անդ. եր. 65). Եւ ահա՛ անամուսնութեան շարունակութիւն մը. Հալածանաց ատեն ընտրելի, եւ չորրորդ դարուն՝ Հալածանքը դադրելէն ետքը պաշտպանեալ։ Այս որովհետեւ պաշտպանութիւնը Թշնամիի դէմ կըլլայ, անամուսնութեան վիճակին ալ միայն չորրորդ դարուն մէջ Թշնամի ունենալ սկսեր է, որ պաշտպանութիւն ալ այն ժամանակն է սկսեր։ Ասոնք միշտ՝ Հակառակորդին ըսած խօսքերուն հետեւութիւններն են։

Բայց այս խօսքերուն մէջն ալ սխալներ կան։ Հալածանքի համար ամուրի վիճակ ընտրել ըսածը բողոքականութեան գիւտ է, որուն գործնականը իրենք ալ 'ի գործ դրած չեն։ Շատ ատեն շատ տեղ հալածանք քաշեցին. երբեմն իրենց մոլորութիւններնուն, բայց շատ հեղ ալ խռովութիւն սերմանելնուն համար. եւ մէկ տեղ մըն ալ կըհալածուինք կոր ըսելով իրենց ամուսիններէն չզատուեցան։ Մի՞ յիշատակագիրներէն սորվեր են որ առաջին քրիստոնէից մէջ կուսակրօն կեանք անցըցողները այդպէս պատճառէ մը ստիպուած են։

Պօղոս առաքեալը չամուսնանալու խրատներ կու-
տայ. բայց այդպէս պատճառ մը չցուցըներ.
Սուրբ առաքելոյս խրատները հակառակորդը ան-
միջապէս հալածանաց համար ամուրի վիճակը
ընտրելի էր ըսելէն եւքը կը դնէ. բայց աղէկ
մը չեմ հասկընար թէ իր ըսածին հաստատու-
թիւնը առաքելական խօսքերուն ո՛ր կողմը մնա-
ցեր է: Իր թարգմանածէն կառնեմք այս տեղ
պէտք եղած խօսքերը:

" Արդ՝ ան բաներուն համար որ դուք ինծի
,, գրեցիք, աղէկ է մարդուս՝ որ կընկան չմօտե-
,, նայ: Բայց պոռնկութիւնը արգիլելու հա-
,, մար ամէն մարդ թող իր կընիկը ունենայ, ու
,, ամէն կընիկ իր էրիկը ունենայ: Աս կը զրուցեմ
,, թոյլ տալով եւ չէ թէ հրամայելով,,: Յայտ-
նի՛ է խօսքերէս որ եղած թոյլտուութիւնը կամ
զիջումը ամուսնանալու հրաման տալն է, չէ թէ
ժամանակը վտանգալից եւ կատաղի հալածանաց
ատեն ըլլալուն համար անամուսին մնալու հրաման
տալը: Ինքնին գովելի եւ ընտրելի էր այս վի-
ճակը. կուզէր սուրբ առաքեալը որ ամէն մարդ
իրեն պէս ըլլայ: Ամուսնացողներուն ալ մէկ
պայման մը կը դնէ ամուսնական օրինօք վարուե-
լու. " մի՛ զրկէք զմիմեանս, կըսէ. բայց եթէ
,, ինչ 'ի միաբանութենէ, զի ուխտիցն պարապի-
,, ցէք. եւ դարձեալ 'ի նոյն դարձջիք, զի մի
,, փորձեսցէ զձեզ սատանայ,,: * Սուրբն ուխ-

* Այս կտորը հակառակորդը զանց է ըրեր

որ պարապելու ժամանակ ամուսնական յարաբերութիւններէն հրաժարելու է։ Սերենի՝ որքան ժամանակ այն ուխտը տեւէ նէ՝ այնքան ժամանակ ալ ժուժկալութիւնը տեւելու է։ Սերենի ուխտի պարապիլը մշտնջենաւոր ըլլայ նէ՝ ինչպէս է ոմանց եկեղեցեաց քահանայներուն պաշտօնը որ ամէն օր սուրբ պատարագ պիտի մատուցանեն եւ սուրբ խորհուրդները պիտի մատակարարեն, ամուսնութենէ հրաժարիլն ալ մշտնջենաւոր պիտի ըլլայ։ Այսպէս է Հռոմայ եկեղեցւոյն քահանաներուն։ Իսկ ուրիշները որ ամէն ատեն ուխտի պարապիլ չունին. եկեղեցական պաշտօն վարելնին եւ սուրբ խորհուրդները մատակարարելնին շրջանով է, ազատ եղած ժամանակնին կրնան 'ի նոյն գտնալ. եւ այսպէս կընեն արեւելեան ազգաց քահանայները, եւ մառոնիներն ալ որ հռոմէական են։

Սուրբ առաքեալը չամուսնացածներուն եւ որբեւարիներուն ալ նոյն խրատը կուտայ. « աղէկ

նոր համար անշուշտ, որ սուրբ առաքելոյն առ Կորնթացիս առաջին թուղթը ամբողջ հոս թարգմանելու չէ՛ր։ Բայց չակերտներով գրածը՝ բնագրին նմանն ըլլալու է. չէ՛ նէ չարաչար աղաւաղութիւն կըլլայ ըսաւ նոյն ինքն հակառակորդը։ Խօսքին կարգէն բան վերցընէ նէ իր նպատակէն դուրս դատելով՝ երեք կէտ դնել սովորութիւն է. ասիկայ այն կէտերը դնելն ալ զանց է ըրեր. որով կարդացողը զանկառը ըմանի տեղ կըկըլէ։

,, է անոնց՝ կ՚ըսէ . որ քեզի պէս կենան ։ Հա-
,, պա թէ որ ժուժկալութիւն չունին՝ թող ա-
,, մուսնանան ։ Ինչու որ աղէկ է ամուսնանալը ,
,, քան թէ բորբոքիլը ,, ։ Օրհնուած բրած առենն
ալ ամբիչցընելու կերպով մը կը խօսի . զգաստ
ամուրիններուն եւ այրիներուն՝ ժուժկալութիւն
չունիս նէ ամուսնացի՛ր ըսելը՝ դարձեալ չամուս-
նանալու յորդորել մըն է ։ Ամբողջ եօթներորդ
գլուխը այս նիւթոյս վրայ կը խօսի սուրբ առաք-
եալը . եւ միայն երկու տեղ՝ վտանգ եւ նեղու-
թիւն կը յիշէ . մէկ մը՝ երբ կուսանաց համար իր
կողմէն կ՚ըսէ որ " ասիկայ աղէկ է հիմակուան
,, նեղութեանը համար *,, այսինքն՝ աղէկ է մար-
դուս որ ասանկ ըլլայ ,, ։ Երկրորդ խօսքն է այս .
" թէ որ կոյսը ամուսնանայ՝ չմեղանչեր . բայց
,, անանկները մարմնոյ նեղութիւն պիտի ունե-
,, նան ,, ։ Այս նեղութիւնները կատաղի հալածա-

* Հականակորդին թարգմանածն է այս . իսկ գր-
աբարն է , " համարիմ թէ այնպէս լաւ իցէ . բայց
,, վասն վտանգին որ 'ի վերայ կայ , բարւո՛ք է մար-
,, դոյ թէ այնպէս իցէ ,, ։ Կը տեսնես որ գրաբարին
մէջի ծայր բառը աշխարհաբարին մէջ չկայ , եւ վտանգ
բառն՝ ալ՝ որ չէ՛ թէ ներկայ՝ այլ մօտաւոր նեղու-
թիւն կ՚ընչանակէ , պարզապէս նեղութիւն թարգման-
ուեր է ։ 'Ի վերայ կայ բառերն ալ՝ որ գալը խիստ
մօտ եղած կը ցուցընէ եւ չէ՛ թէ արդէն եղած , հիմակ-
ուան կը թարգմանէ ։

նուց ժամանակ չէին ցուցըներ Հարկաւ․ ուրիշ միւսքով կըրնան ունենալ. ամուսնացելոց վանդ-ները եւ մարմնոյ նեղութիւնները միայն մէկ երկու տարի մը չեն․ անոր համար ասոնց մէկին յատկացընելը ըստ կամաց մեկնել է․ որ միտք չունի ալ նէ՝ ապացոյց չկրնար ըլլալ։

Հակառակորդը սուրբ առաքելոյն խօսքերը մինչեւ հոս, այսինքն՝ Ա․ Կորն․ Է․ գլուխին մինչեւ 28 համարը կը թարգմանէ․ Ինկէց ետքը սուրբ առաքեալը կոյսերուն զիջանելով ներելուն պատճառը կուտայ, որ յիշեալ թարգմանը պատշաճ չէ՝ դատած իր ընթերցողներուն բանալ. եւ է այս ։ '' Կամիմ զձեզ անհոգս լինել. զի որ ան-
,, կին է հոգայ զտեառն թէ որպէս հաճոյ լի-
,, ցի տեառն. եւ որ կանամբին է հոգայ զաշխար-
,, հիս թէ որպէս հաճոյ լիցի կնոջ իւրում։ Եւ
,, ահա մեկնեցան 'ի միմեանց աղջիկն եւ կոյսն.
,, զի կոյսն հոգայ զտեառն զի իցէ սուրբ մարմ-
,, նով եւ հոգւով. եւ աղջիկն հոգայ զաշխար
,, հիս, թէ որպէս հաճոյ լիցի առն իւրում ,,։
(Ա․ Կոր․ 32 — 34)։ Այս այնպէս պատճառ մըն է որ՝ միայն վտանգալից տառապանաց եւ կատաղի հալածանաց ժամանակին յատուկ չէ՝. ամէն ժամանակի համար է․ եւ կարգաւորներուն աւելի պէտք է մարմնով եւ հոգւով սուրբ ըլլալ։ Ասոր՝ հին հաւատացելոց մէջ կուսութիւնը ամուսնութենէ աւելի ընտրուած ըլլալուն համար հակառակորդին բերած պատճառը սուտ է ։

Անամուսնութիւնը չորրորդ դարուն պաշտ-պանել սկսաւ ըսելն ալ՝ որով հասկըցընել կու-զէ թէ կարգաւորներուն ամուսնութենէ հրաժա-րիլն այն ժամանակէն սկսաւ, սուտ է։ Սար-պետութիւն մըն ալ կըբանեցընէ. կըսէ. « Պեղ-
« լարմինի եւ Թոմմասինի բոլոր գիտութիւնն ու
« քննութիւնները առաջին երեք դարուց մէջ վը-
« կայութիւն մը չկրցին նշմարել կուսակրօնու-
« թեան նկատմամբ » (Ընդդիմախ. եր. 65)։ Ամէն մարդ այս տեսնելով կըսէ թէ ուրեմն այս բանին համար հին վկայութիւն բընտըռելը պարապ աշ-խատութիւն է։ Մենք ո՛չ Պեղլարմինոսի եւ ո՛չ Թոմմասինի այս բանիս վրայ գրածնին տեսած չեմք. բայց քանի մը վկայութիւններ գիտեմք ա-ռաջին երեք դարուց մէջ գրուած։ Ասոնց մէկն է սուրբն Յուստինոս վկայ՝ երկրորդ դարուն մէջ. որ կըսէ. « մեր մէջ շատ երիկ մարդ եւ կընիկ մարդ
« կը գտնուին որ իրենց մինչեւ վաթսուն եւ եօ-
« թանասուն տարին կուսութիւննին անարատ պա-
« հեցին » (Ջատագով. Ա. Յս. 15)։ Տերտու-ղիանոս՝ երրորդ դարու հեղինակ, կըսէ. « կան
« մէջերնիս որ անժուժկալութեան ստուերն անգամ
« կը հեռացընեն. մինչեւ գերեզման ժուժկալու-
« թիւն պահելով. ծեր են, միանգամայն եւ
« տղայ » (Ջատագովութեան. գլ. Թ)։ Մինուկիոս Փելիքս, նոյն երրորդ դարուն մէջ. Հոկտաւիոս ա-նուն գրքին մէջ կըսէ թէ « կատարեալ ժուժկա-
« լութիւնք քրիստոնեաներուն մէջ հասարակ

„ է „։ Սուրբն Կիպրիանոս՝ ասոնց ժամանակակից, եպսերը քահանայական կարգի զարդ կանուանէ։ (Տե՛ս. Շքեղասա յառաջանց)։ Այս վերջինիս խօսքը կոյս աղջիկներուն համար է. բայց քահանայները իրենք անձնապէս ժուժկալութիւն չունենային նէ՝ աղջիկներուն ակար բնութեանը մշտնջենաւոր կուսութիւն պահելնին այնպիսի քահանաներուն զարդ ըլլալէն զատ նախատինք ալ կըլլար։

Ասոնց ըսածը պատուէր չէ՛. եղածը պատմել է. բայց ասոնք թէ որ պատուէրի մը հնազանդելով անարատ կուսութիւն պահեցին նէ՝ պատուէր կայ եղեր. պատուէր չկար նէ՝ արդէն ըլլալու վրայ եղած բանին համար պատուէր տալը պարապ բան է։

Որոգինէսի մէկ խօսքը առեր է հակառակորդը. (ո՛րն ըլլալը չգիտեմք). եւ իր խոնարհութեամբը՝ Թոմասինիէն ու Պելլարմինէն աւելի սրատես ըլլալէն իրեն պարծանք մը չհանելու համար. որովհետեւ Որոգինէս ալ երրորդ դարուն մատենագիրներէն էր, կըսէ. „ Իսկ Որոգինէսի ըսածը միայն սա կը հաստատէ թէ իր „ առանձնական կարծիքը կուսակրօնութեան կողմն էր, եւ թէ եկեղեցւոյն սովորութիւնը իր „ կարծեացը կը հակառակէր „։ (Ընդդիմախ. եր. 65)։ Վերջին ըսածին համար հակառակորդէն վկայութիւն կուզեմք, որով իմանամք թէ ինչէ՞ն գիտէ որ եկեղեցիին սովորութիւնը այս բանիս

վրայօք, Որոգինեսի կարծիքին՝ կը Հակառակէր ։ Իսկ առաջին ըսածը թէ կուսակրօնութեան վրայ խօսածը իրեն առանձնական կարծիքն է, արդէն իրօք եւ պատմական Հաւաստիքներով սովրեցանք որ բազմաթիւ մարդիկ՝ թէ՛ այր եւ թէ՛ կին՝ իրենց կեանքը անարատ կուսութեամբ կանցընեն եղեր ։ Հոս Որոգինէսի մէկ ըսածն ալ դնենք. որպէս զի կարդացողները տեսնեն որ իր առանձնական կարծիքը չըզլուցնէր. Երազ չէ պատմածը. քրիստոնեաներուն ոխերիմ թշնամի Կելսոսին Հետ կը խօսի, եւ եղածները անոր աչքին առաջը դընելով կը ցուցընէ որ Աստուծոյ շնորհքը քրիստոնէից մէջ աւելի ընտիր կոյսեր պահած է. որոց նմանը Հեթանոսներն ունենալու Համար անբնական միջոցներու ձեռք կը զարնէին ։ Կարդացողներուն օրինաւոր Հետաեւութիւն դիւրաւ Հանելնուն օգնելու Համար Որոգինէսի խօսքը քիչ մը երկանկէկ կը թարգմանենք Հոս ։

" Անոնք՝ որ պարզութիւնը կը քամահեն եւ
,, մինչեւ անգամ խենթ եւ թշուառ անուանելու
,, կը Հասնին. երբ որ Յիսուսի Քրիստոսի վար-
,, դապետութիւնն ընդունելով զիրենք անոր կը
,, յանձնեն, չէ՛ թէ միայն պղծութիւնով, աղ-
,, տեղութիւնով եւ գարշ ցանկութիւններով իրենք
,, զիրենք պղծելէն Հեռու կը կենան, այլ եւ շա-
,, տերը կը տեսնենք որ կատարեալ քահանայի պէս՝
,, որոյ Համար այսպիսի Հեշտութիւնները խայծ
,, մը չեն, գործէն ժուժկալելը Հերիք չսեպե-

„լով իրենք իրենց մէջ ալ մաքուր կը կենան ։ Ա-
„թենացիներուն հերոփանդը (կրօնական գործ-
„քերնին կատարողը) երբ որ տոփանաց եռանդը
„չափաւորելու համար խոստում ընելու չըլլա-
„հիր, այն տոփանքը բուն աղբիւրէն կը ցամքե-
„ցընէ մոլեխինդ գործածելով. եւ այն ատենը ա-
„թենացւոց կրօնական պաշտամունքը հանդէսով կա-
„տարելու արժանի ըլլալու չափ մաքրուած կը
„սեպուի ։ Բայց քրիստոնեաներուն մէջ անանկ-
„ներ կը տեսնուին, այն ալ միայն մէկ հոգի մը չէ՝
„որոց սրտերնուն բոլոր չար խորհուրդները մեր-
„ժելու՝ եւ իրենց ուխտը Աստուծոյ ներկայացը-
„նելու համար Աստուծոյ խօսքէն զատ ուրիշ բան
„պէտք չէ՛ ։ Ուրիշ անուանեալ աստուածներուն
„քով քանի մի խիստ սակաւաթիւ կոյսեր կան,
„որ մարդոցմէ անձնապահ ըլլալով կամ չըլլա-
„լով — առ այժմ բանն ատոր վրայ չէ, — ի-
„րենց ծառայած աստուածութեանը համար մաք-
„րութեամբ ապրիլ կերեւին. Բայց քրիստոնեա-
„ներուն մէջ մշտնջենաւոր կուսութիւն պահողնե-
„րը ո՛չ աշխարհական հարստութիւնը իրենց նպա-
„տակ ըրած են. ո՛չ ագահութիւնը կամ փա-
„ռասիրութիւնը կամ ուրիշ վարձքի մը շահա-
„խնդրութիւն ։ Այլ որովհետեւ ասոնք զԱստուած
„գտնալը իրենց հեշտութիւն ըրած են. Աստ-
„ուած ալ անոնք իրեն հաճած օգուտը կը պահէ „։
(Որոգինէս . Ընդդէմ Կելսոսի . Գր . Ա . ։ Գլուխ . [illegible]-
[illegible] . Մինեը . [illegible] . [illegible] . Ա .

էջ. 401)։ Մենք այս խօսքերուն մէջ բան պատմել կը տեսնենք. առանձնական կարծիք բացատրել չեմք տեսներ. եւ ասանկ բան մը ընելու տեղն ալ չէր։ Երբ Հեթանոս Հակառակորդի մը դիմաց քրիստոնէութիւնը կը պաշտպանէ՝ ընդհանուր քրիստոնէից դաւանութիւնն ու սովորութիւնը պատմելու ժամանակ է. չէ՛ թէ առանձին կարծիք բացատրելու։

Հակառակորդը այս նիւթոյս վրայ երկանկէկ կը խօսի. կուսակրօնութեան վրայօք արեւելեան եւ արեւմտեան եկեղեցիներուն սովորութիւնը կը զրուցէ. քանի մի հին հայրապետներ եւ յանուանէ Սիրիկիոս Հռոմայ հայրապետը կը զրպարտէ թէ ամուսնութիւնը ,, պիղծ եւ մարմնաւոր վի-
,, ճակ մըն է, որուն մէջ անկարելի է Աստուծոյ
,, հաճոյ ըլլալ ,, ըսեր է (Ընդդիմախօս. եր. 66).
եւ ,, եկեղեցականաց կուսակրօնութիւնը պարտ
,, ճանչցող առաջին օրէնքը՝ յամին 385 Հռոմայ
,, Սերիկիոս եպիսկոպոսին օրինադրութեամբն
,, հաստատուեցաւ ,,. (անդ. եր. 65), երբ Սերիկիոս ամուսնութեան վիճակը բնաւ մէկ տեղ մը բացարձակապէս պիղծ եւ Աստուծոյ հաճոյ ըլլալն անկարելի ըսող վիճակ չէ՛ անուանած. այլ այսքան միայն կը խօսի. ,, անոնք որ օրինօք ա-
,, մուսնանալէն ետքը քահանայութեան կամ ան-
,, կէց վար եկեղեցական աստիճանի կը հասնին,
,, եւ անկէց ետքը ամուսնական օրէնքով վարուե-
,, լով որդոց տէր կըլլան. յանցանք կը գործեն ,,

(Թուղթ. առ Հիմերիոս եպիսկ. Տարրակոն. գլ. Ի). Եւ ատանկները պաշտօնէ խափանել կը պատուիրէ. ատանկներուն ամուսնութիւնը պիղծ է, եւ անկարելի է որ Աստուծոյ հաճոյ ըլլայ։ Հակառակորդին նեղանալուն այսքանն ալ հերիք է. բայց ասիկայ մեր հոգը չէ՛, մենք շիտակն ըսենք. այն թող նեղանայ։ Այս 386 թուին Հռոմ ըրած ժողովքին մէջ՝ կարգաւորներուն ժուժկալութիւն պատուիրելով կըսէ, ասով նոր կանոն մը չենք դներ. այլ հիներուն դրած կանոնը հաստատուն պահել կուզենք։ Բայց հակառակորդը՝ իր եկեղեցական պատմութեանց հմուտ ըլլալուն չափովը Սիրիկիոսի ըսածը ծռմռելէն եւ չըսածը ըսել տալէն ետքը կըսկըսի կուսակրօն վարդապետներուն մէջ տեսնուած զեղծումները կը պատմէ. (Ընդդէմախ. եր. 66 — 74). որոց ամենուն դէմ սա կը հարցընեմ իրեն. որովհետեւ չկարգուելէն այդպէս վարուց ապականութիւններ կը հետեւին նէ՝ ինչո՞ւ համար բողոքականներուն քարոզիչները կարգուելու պարտաւորող օրէնք մը չեն դրած. ինչո՞ւ համար կը ներեն որ կուսակրօն քահանայներուն համար պատմած զեղծ վարքերը եւ պղծութիւնները իր կրօնակից քարոզիչներուն մէջ ալ տեսնուելու առիթ տրուի. ամուսնանալը կամաւորի մնալը իրենց կամքին ձգելով։

Պապական դիպուածաբանները " Գոսթիրոս, " Բենկիոս, Հօսիոս, եւ Պեամբիճիր կուսութիւ- նն աւելի ամուսնական վիճակէն վեր բարձ-

„թացուցին եկեղեցականաց մէջ„, կըսէ հակառակորդը. (Ընդդիմախ. եր. 69). ուզողն ալ կըրնայ հաստատել: Բայց անմիջապէս ետքը զրուցածովը այս ըսածը կը սրբագրէ. եւ կըսէ. „Պռօս-„թիրոս կը պնդէ՝ թէ քահանայ մը եւս առաւել „ծանր մեղք կը գործէ ամուսնանալով, քան թէ „պոռնկութիւն գործելով: Սոյն օրինակ կու-„սուցանէն Բեկիոս, եւ Հոսիաս: Քամբիճիր „կը հաստատէ թէ քահանայ մը աւելի ահաւոր „մեղք կը գործէ ամուսնանալով, քան թէ շատ մը „բոզ պահելով իր տանը մէջ„ (անդ. եր. 61): Այդ դիպուածաբանները մեզի ծանօթ չեն. եւ դիպուածաբաններէն ոմանք իբրեւ անպատեհ բաներ խօսող՝ Հռոմէն ալ մերժուած են. ասոնք անոնցմէ՞ են թէ չէ՝ չգիտեմք. բայց հին հայրապետներուն մէջ ալ ասոնց նման կամ մօտ խօսող կը գտնեմք. որոցմէ երկուքը հոս կը դնեմք: Սուրբըն Յովհան Ոսկեբերան կըսէ. „ուխտն աւրող „կոյսերուն յանցանքը շնացողներէն ծանր է„: (Ճառ. յէ. ու չկրկնելոյ ամուսնութեան): Եւ սուրբըն Օգոստինոս կըսէ. „թէ որ կին մը՝ որ Քը-„րիստոսի անդամ է, իր երկանը խոստացած հա-„ւատարմութեան դէմ գործելով Քրիստոսի դէմ „կը մեղանչէ նէ, ո՞րչափ եւս առաւել նոյն իսկ „Քրիստոսի ուխտ ընողը կը մեղանչէ ուխտն ա-„ւրելովը, որ բնաւ ուխտ չընելու ալ կարող էր„ (Յաղագս բարեաց այրիութեան. գլ. ԺԱ): Ահա՛ ա-սոնք ալ հակառակորդը գիտնար նէ՝ այն ան

նօթ դիպուածաքաններուն կարգը պիտի դնէր․ եւ անոնցմէ ըսել չելլեր թէ անոնք պոռնկութիւնը վեր բարձրացուցին ։ Կարգաւորներուն համար որ մշտնջենաւոր կուսութեան ուխտ ըրած են հըրապարակաւ, պոռնկութիւնն ալ մահացու մեղք է․ իրենց ըրած ուխտը աւրելով ամուսնանալն ալ․ Բայց երբ անոնց մէջ իրարմէ ծանրը թեթեւը նայելու ըլլանք նէ՝ ամուսնանալը պոռնըկութենէն ծանր է․ անոր համար որ՝ պոռնկութիւնը մեղուցեալը շարունակ նոյն մեղքին մէջ մնալու վիճակը չձգեր․ պոռնիկը կրնայ իր բոզը ձգել եւ անկէ հեռանալ, եւ խղճի վրայ ծանրանալու բան մը չունենար անկէց ետքը, թէ որ ճշմարիտ զղջմամբ այն մեղքէն ետ կեցեր եւ եկեղեցական կանոնաց կամ իր խոստովանահօրը դրած ապաշխարութիւնը քաշելով Աստուծոյ եւ եկեղեցւոյ հետ հաշտուեր է նէ ։ Իսկ ամուսնացողը ինք զինքը մէկ մեղանչական վիճակի մը մէջ կը դնէ Աստուծոյ ըրած ուխտը աւրելով․ որկէց ազատիլը բաւական դժուարութիւններ ունի՝ բոզէ զատուելու պէս չէ՛ ։ Թո՛ղ որ պոռնկեալը ձեռքէն ելածին չափ հասարակաց գայթակղութիւն ալէն կըզգուշանայ․ ամուսնացեալը քանի՛ որ այն վիճակին մէջն է՝ միշտ գայթակղութիւն կուտայ ։ Անոնցմէ մեծ է սրբոյն Օգոստինոսի տուած պատճառը․ իր երկանը խոստացած հաւատարմութեանը դէմ մեղանչելն ու Աստուծոյ առաջ ըրած ուխտը աւրելը մէկ չէ ։

Հակառակորդին ուրիշ բաժններուն ալ պատասխանելը առ այժմ աւելորդ սեպեցինք. որովհետեւ մինչեւ հիմայ բաժններէս անոնց պատասխանն ալ կելլէ. բայց թէ որ հակառակորդը ասանցմով գոհ չըլլայ, եւ անոնց ալ առանձին պատասխանի խնդրէ նէ° պատրաստ ենք աշխատելու մինչեւ զինքը գոհ ընենք. միայն թէ այդպէս կամք մը ունենալը իմանանք։

## ՅՕԴՈՒԱԾ 8

### Պահոց վերայ

Հակառակորդը այս բանիս վրայ քիչ ըսելիք ունի. որ է այս. " Ես նիւթին վրայ անոր չենք „ հակառակիր կըսէ, բաց 'ի կերպէն. Մենք „ պահք ըսելով ծոմապահութիւն կը հասկընամք. „ այսինքն կերակուրէ ետ կենալ բոլորովին, ու „ ո՛չ թէ միայն միսէ. եւ մեր ծոմապահութեան „ օրերը՝ աղօթից օրեր են. " Պիւթագորաս" իր „ հետեւողացը սորվեցուց միսէ ետ կենալ. եւ „ արքեպիսկոպոսը իր պահոց նկատմամբ պիւ- „ թագորեան մը չէ՞. Եւ որովհետեւ ինք զին- „ քը կը հերքէ օրինակելով Հռոմ. ԺԴ. 3. „ եւ Ա. Կորնթ. Ը. 8—13, վասն որոյ յանդ—

,, չվստահենք մեր ժամանակը աս կէտին վրայ ,, ։ (Ընդդէմաւ. եր. 63)։

Սրբազան կաթուղիկոսին ըսածին՝ կերպին վրայ հակառակիլ չէր արժեր, երբ բանին էութեանը վրայ չէր՝ կերպին վրայ էր. լոկ կերպին վրայ հակառակիլը կարծեմ կռուասէր եւ հակառակասէր ոգի մը կը ցուցընէ. եւ սուրբ առաքեալը մեզի կը խրատէ '' մի՛ բանակռիւ լինել յո- ,, չինչ պէտս 'ի կործանումն լսողաց ,, (Բ. Տիմ. Բ. 14)։

Պահք ընելով ծոմապահութիւն կը հասկընան եւ ըստ այնմ կընեն եղեր. այդ ալ աղէկ. սուրբ առաքեալը կըսէ. '' ոմն պահէ որ ըստ օ- ,, րէ, եւ ոմն պահէ զօրհանապազ. իւրաքանչիւր ,, ոք զիւր միտս հաճեսցէ ,, (Հռովմ. ԺԴ. 5). Այլ իրենց ծոմապահութեան օրերը աղօթից օրեր ըլլալն ալ յատուկ կընշանակէ հակառակորդը. որպէս թէ ուղղափառաց պատուէր եղած ըլլայ որ պահք կամ ծոմ բռնած օրերնին միայն պահեցողութիւնը հերիք սեպեն, եւ աղօթք չընեն։ Այսպէս անպիտան բաները յատուկ նշանակելը՝ պարապ տեղը երկարախօսութիւն է։

Իր ըրածը սորվեցուց. մենք ալ հաւնեցանք. բայց այն պայմանով որ իրենց կրօնական սկզբանցը հետ համաձայնի ըրածնին։ Աստի սովրիլ կուզեմ թէ [illegible] ծոմապահութիւնը կընեն, եւ չէ՛ թէ միայն միսէ՝ այլ կերակուրէ բոլորովին կենա[illegible]նէ՝ այս գործերնին բարեգործու-

Թիւ՞ն է ըսելով կըսեն՝ թէ չէ՛։ Բարեգործութեան տեղ չեն դներ նէ՝ մեր պահոց համեմատելը անտեղի է. շատերուն կը պատահի որ գարծի մը զբաղեալ ըլլալով կամ ուրիշ արգելք մը գտնելով կերակուր չեն ուտեր. կամ հիւանդ կըլլան՝ եւ բժիշկը անոնց կը պատուիրէ կերակուր չուտել. ասոնք բարեգործութիւն չեն. բողոքականներն ալ թէ որ ծոմը իրրեւ բարի գործ չեն ըներ նէ՝ ասոնց կերակուր չուտելնուն նման բան մը կըլլայ։ Իսկ թէ որ բարեգործութիւն կըսեպեն նէ՝ իրենք ալ փրկութիւն ՚ի ձեռն բարեգործութեան հաւատացողներէն եղած կըլլան. բայց ասիկայ մեր հակառակորդը հոգեկործան մոլորութեան կարգ դրեր էր։

Միս ուտելը Պիւթագորաս իր հետեւողներուն արգիլած է եղեր. ասկէց մեզի ի՞նչ, երբ միս ուտելուն արգելքը մենք անկէց առած չըլլանք։ Պիւթագորասի աշակերտ՝ այս կողմէն, մանիքեցիներն են, որ բոլոր իրենց կենացը մէջ միս չէին ուտեր. իսկ մենք՝ որ միս չուտելու յատկացած օրեր ունինք, եւ ուրիշ օրերը միս կուտենք, պիւթագորեան չենք կրնար ըլլալ։ Ուղղափառներուն երբեմն միսէ հրաժարիլը՝ պիւթագորեաններուն միշտ միսէ հրաժարուելուն նմանցընելով հակառակորդը՝ երբ սրբազան կաթուղիկոսը պիւթագորեան կանուանէ, կը ցուցընէ որ աստուածաշունչ գրոց եւ եկեղեցական պատմութեան վրայ ունեցածէն պակաս չէ՛ պիւթագորեան

րութեան վրայ ունեցած տեղեկութիւնը։

Սրբազան կաթուղիկոսը Պօղոս առաքելոյն առ Հռոմայեցիս եւ առ Կորնթացիս նամակներէն վկայութիւն առնելով ինք զինքը կը հերքէ ըսեր է. բայց առաքելոյն խօսքը կաթուղիկոսին ո՛ր խօսքին հերքումն ըլլալը չէ՛ նշանակեր. ինչպէս որ ուրիշ նիւթերու վրայ բերած վկայութիւններուն համար ըսեր էր՝ որոյ տեղի չունենալը տեսանք։ Պահոց վրայ բերած վկայութիւններուն ո՛րը եւ ո՛ր կողմէն, քարք սուրբ գրքին ըսածներուն հակառակ ըլլալը չգիտնալնուս համար պատասխան ալ չունիմք առ այժմ. մինչեւ որ այդ հակառակութիւնները մեզի ցուցընելու հաճի։

# ԳԼՈՒԽ . Գ

Բարի Յորդ գրքին բողոքականաց դէմ զրպարտու-
թիւնները որո՞նք են ։

Հակառակորդը սրբազան կաթուղիկոսին ի-
րենց համար ըրած քանի մի ամբաստանութիւն-
ները զրպարտութիւն կը կոչէ . որկէց համարձա-
կութիւն կառնէ սրբազանին ալ անվայել ածա-
կաններ տալով անիկայ անպատուելու , համա-
ռօտ մը սոնք ալ տեսնենք ։

## §. 1

" Քարոզիչներուն Նորաղանդ անունը կուտայ .
" քրիստոնեայ ազգերէն ժողովուրդ կը զող-
" նան կըսէ . եւ մըտքերնին աս է թէ ընդ-
" հանուր քրիստոնէից վրայ ընդհանուր հա-
" մուութեան իշխանութիւնը իրենց սեպհա-
" կանեն" ։ ( Ընդդիմախ . եր . 7 . 8 ) ։ Հե-
տակը ըսելով Նորաղանդ անունը բողոքական-
ներուն շատ վայլելու անուն մը չէ . որովհե-
տեւ աղանդներնին հին է . եւ մենք ցուցու-
ցինք որ բարեգործութեան վրայ ունեցած գա-
ղափարնին Սիմոն մոգին ատենէն է . որ ինչ-
պէս որ յայտնի է՝ սուրբ առաքելոց ժամա-
նակակից էր ։ Միւս ըսածները զրպարտ

թիւ՞ն են թէ չէ, իրենք դատաւոր կըլլեն։ Մըանին պաշտօն առած են սուրբ աւետարանը չճանչցողներուն մէջը մըտնել եւ աւետարան ճանչցընել. եւ երբ սուրբ աւետարանը ճանչցող եւ իրենցմէ աղէկ հասկցող եւ իրենցմէ աւելի յարգող քրիստոնեայ ազգերուն մէջ կը մտնեն նէ՝ ըրածներնուն ի՞նչ անուն տալու է. որովհետեւ աւետարան ճանչցընել չէ, որ անոնք առաջուց ալ կը ճանչնային։ Միտքը շիտակ կամ ծուռ հասկընալն ալ իրենց կրօնքին ըսկզբունքին նայելով իրենց հօգ ընելու բանը չէ։ Իրենք չե՞ն մի ըսողը որ սուրբ աւետարանը կարդացողը իրեն հաւատքը եւ իր փրկութեանը համար պէտք եղածները մէջը կը գտնէ. եւ Աստուծոյ եւ մարդոց մէջ մարդ մտնելու չէ. ուրեմն սուրբ գիրք ունեցողներուն եւ կարդացողներուն մէջ իրենք ի՞նչ բան ունին։ Երբ որ մէկ մարդ մը մէկուն տունը մըտնէ առանց կանչուելու, եւ անկոչ գալը արդարացընելու համար պատճառ մը չկրնայ ցուցընել նէ՝ այն մարդը գող կարծելը զրպարտութիւն մը չէ։

## §. Բ

«Լուսաւորչական քարոզիչներուն վարքն ու «գործքը ըստ ամենայնի հակառակ են հրա- «մանաց եւ կանոնաց Քրիստոսի» կըսէ եղեր սրբազան կաթողիկոսը (Ռուսէ Յունր. Եր. 48. Ընդհանր. Եր. 9). Ասիկայ ալ մեծ զըր- պարտութիւն մը չէ. Քրիստոսի հիմնած եւ հաստատած եւ մինչեւ հիմայ հաստատուն պահած եւ մինչեւ աշխարհքիս վերջը հաս- տատ պահելու խոստացած եկեղեցիին մէջը չեն. բարեգործութենէն ալ հոգւոյ փրկու- թեան համար օգուտ մը չճանչնալուններին պար- տականութիւն մը չեն ճանչնար բարեգործ ըլ- լալու. Անոնք հերիք չեն մի մէկու մը հա- մար ըսելու որ վարքը Քրիստոսի հրամանէ- ներուն ու կանոններուն հակառակ է։

## §. Գ

Սրբազան կաթողիկոսը կըսէ եղեր թէ «ուղածնուն պէս ալ կը մեկնեն սուրբ գիր- «քը, անոր մէջ պարունակած ամենապարզ «միտքը մէկ դի կը ձգեն իրենց կամքին յար- «մար մեկնութիւններ տալով»։ (Ռուսէ Յունր. Եր. 49). Ինչ կըսես. ծանր զրպարտութիւն չէ մի ասիկայ. Ասկէց ետքը մէկ մարդ մը իր

յատուկ անունովը կանչելն ալ զրպարտութիւններուն կարգը պիտի անցընէ Հակառակորդը ։ Բայց ես իրենց կը հարցընեմ ․ Ինչպէս կը մեկնէ հոս տեառն մերոյ սա ամենապարզ խօսքերը ։ " Մարմին իմ ճշմարիտ կերակուր " է եւ արիւն իմ ճշմարիտ ըմպելի է ։ Հա- " ցըն զոր ես տաց մարմին իմ է ։ Այս է " մարմին իմ Այս է արիւն իմ ․ " (Յովհ․ Զ․ 56 , 52 ․ Մատթ․ ԻԶ․ 26 ․ 28 ) ։ Ինչպէս կը մեկնէ տեառն մերոյ առաքեալներուն երեսը փչելը եւ անոնց Հոգի սուրբ շնորհելով ըսելը ․ " Եթէ ումեք թողուցուք զմեղս ․ " թողեալ լիցի նոցա ․ եթէ զուրուք ունիցիք " կալեալ լիցի" ։ (Յովհ․ Ի ․ 22 ․ 23 ) ։ Չէ՞ մի որ առաջին վկայութիւններուն համար " Զիա՞րդ կարէ սա տալ մեզ զմարմին իւր ու- " տել" ըսելով ․ ( անդ ․ Զ ․ 53 ․ ) եւ երկրորդին համար " ով կարէ թողուլ զմեղս" ըսելով ( Մարկ ․ Բ ․ 7 ) փարիսեցիներուն պէս այլանդակ մեկնութիւններ կուտայ ․ Նոյն իսկ Հակառակորդը տեսանք գործոյս ընթացքը որ ամենայն արարածք Աստուծոյ բարի են խօսքը բարի են՝ ի կերակուր մեկնեց ․ եւ առաքելոյն [illegible] ըսածը քող կին մը մեկնեց եւ մէջն ալ Հերձուածող բառ մը աւելցուց ։ Բայց տանք մէկ դի ․ Նոյն Հակառակորդին կը հարցունեմ ․ սուրբ գիրքը իրենց ուզածնուն պէս չեն մեկներ նէ որու ուզածին պէս կը մեկնեն ․

որովհետեւ եկեղեցիին տուած մեկնութիւնը չեն ընդունիր ։ Կալվինին կամ Լուտերին կամ Զուինկլիին մեկնածին պէս կը մեկնեն ու կը- կրնար ըսուիլ ․ վասն զի ասոնք սուրբ գրոց վրայօք հեղինակութիւն մը չունին ․ եւ բողոքականները ինչ բաներու մէջ որ ասոնց կը հետեւին նէ ըստ անոնք ըլլալուն համար չէ քաղծնին իրենց ուղածն ըլլալուն համար է ։

## Հ. Ա

Սրբազան կաթողիկոսը ասոնք բարեկենուն համար՝ կամբաստանէ եղեր թէ աշխարհասէր են ։ Բայց իրենք այսպէս չեն ալ նէ՝ այսպէս ըլլալու կերպարանք մը կերեւի վրանին , մենք կարգաւորներուն վրայ աշխարհէ հրաժարելու օրինակներ կը տեսնեմք ․ եւ որու վրայ որ չտեսնեմք նէ աչքերնուս աղէկ չերեւիր ։ Անոր համար երբ աւետարանի քարոզիչ մը զբօսանաց տեղերը յաճախէ իր ընտանիօքը ․ եւ ուրիշ ասանկ բաներ , թէպէտ անվնաս են ասոնք , բայց վրանին աշխարհասիրութեան կնիք մը կենայ կերեւի մեզի ։ Իսկ երբ մենք աւետարանի պաշտօնեայ եմք ըսողներուն մէջ կը տեսնեմք որ կինը մեռնելէն ․ ետքը նորէն կամուսնանայ ․ այդ իրօք ալ աշխարհասիրութիւն եւ մարմնասիրութիւն եւ հեշտասիրութիւն է ։ Բողոքական քարոզիչներուն մէ

թուցը համար Ամերիկայի եւ Անգղիայի եւ Գաղղիայի լրագիրներուն մէջէն քանի փորձուց օրինակ չկրնալ ըլլալու լուրեր կառնենք․ Որոնք համարակ ժողովրդեան վրայ ներելի են ալ նէ մարդոց առաջը, բայց քարոզիչներուն վրայ անմանուելինին գայթակղութիւն կուտայ․ Եւ ասոնց համար արքաղանը կըսէ թէ իրենց մոլեկան բարքը իրենց հեղինակ Լուտերէն ժառանգեր են․ (Ընդդիմախօս․ եր․ 10)։ Հակառակորդը Լուտերը արդարացընելու խօսք ամենեւին չըներ․ ուրիշ ճամբայ մը կը բռնէ իր չնաշխարհիկ տրամաբանութիւնը ձեռքն առնելով․ որուն գաղտնիքը իր հակառակած մարդուն բանծներուն մէջէն բառ մը վերցընելու եւ մնացածներուն վրայ տրամաբանելու կայացած է․ որն որ տեսանք, երբ արքաղանը յատուկ տեղ մը ցուցընելով մինչեւ բառը հոս մշտնջենաւոր կը նշանակէ ըսաւ նէ, Հակառակորդը ամէն տեղ մշտնջենաւոր կընշանակէ ըսելու պէս առաւ, եւ ըստ այնմ տրամաբանեց․ Ուրիշ տեղ ալ սանկ ըրաւ․ հոս ալ տաանկ կընէ․ բայց հոս ըրածը մէկ ուրիշ գէշութիւն մըն ալ կպարունակէ․ այսինքն կաթուղիկոսին համար բոլոր Եւրոպայի առաջ պատախազութիւն ընել․․ կըսէ․ "Մատթէոս " արքեպիսկոպոսին խօսքին նայելով․ Եւրոպայի " Ասիայի եւ Ամերիկացի 80 կամ 100 միլեոն ' բողոքեստանդները առ հասարակ մոլի եւ

«Ճշմարտախօսութեան կրկէք համակեալ անձուծ-
«նկալ եւ անտեղի բարբառոց տէր մարդիկ են»,
(Ընդդիմախօս. եր, 11). Ինքը այն 80 կամ
100 միլիոն բողոքականներուն մէկէն այդ-
պէս բան մը խօսելէք ունէր նէ. կըրնար. ա-
ռանց սրբազանին անունը երեսին քօղ ըը-
նելու անաչառութեամբ խօսիլ. բայց սրբա-
զանին կարծեցեալ զրպարտութիւններուն հա-
մար ամբաստանութիւն ըրած միջոցին երբ ինքն
անոր զրպարտող կըլլայ նէ աւելի բան չէ.
եւ իրեն բարուցը եւ արդարախոհութեանը ա-
ղէկ երաշխաւորութիւն մը չկրնար ըլլալ՝ Հա-
տուածին խօսքը սկիզբէն կարդալով այսպէս կը
գտնամք. «58, 59 եւ 60ռդ երեսներուն վը-
«րայ (Բարի Լուր գիրքը) եւս առաւել ընդար-
«ձակ եւ աւելի ամբաստանութեան մը կը
«հասնի. Հոն կը ցուցընէ թէ բողոքականդ
«քարոզիչները իրենց մոլեկան բարքը ժառան-
«գած են Լուտերէն». եւ այլն. Այս ասանկ
ըսելով վկայելէն ետքը թէ սրբազանին խօս-
քը Բողոքական քարոզիչներուն համար են, որ
ճամբէն երթալով բանը մինչեւ 80 կամ 100
միլեօն ժողովրդեան վրայ ձգեր է. Չէ թէ
ալ ասանկ. ըսելով իր կարդացողներուն հաւ-
տացընել կուզէ որ այս 80 կամ 100 միլեօն
բողոքականները միայն քարոզիչներն են,
ասոնցմէ զատ բազմաթիւ ժողովուրդ ալ ու-
նին, բոլորովին սուտ է. Բայց թէ ա

80 կամ 100 միլիոնը իրարու քարոզիչ կըլլա-ցընելու ալ խօսքին շարքովը , թէ Հասարակ ժողովուրդ գիտակցութիւն ալ նոյն մարդ գրքին մէջ միայն քարոզիչներուն համար գրուածը անոնց ամենուն վրայ մէկէն տարածէ , իրաւունք չունենար զանգատելու երբ սրբազանը զանէ իրեն համար ( որ քարոզիչներուն մէկն ըլլալ կերեւի ) , կեղծաւոր եւ սատանայ եւ մը-տախտակ ըսէ .

Հ . Ե

Սրբազան կաթուղիկոսին համար հակառա-կորդը կըսէ . « Երբեմ 121րդ էն մինչեւ 126րդ
« կանոնները զանոնք թէ աստուածաշունչը
« ծուռ թարգմաներ են , փոխան բան աւելցու-
« ցեր են , ու մէկէն բան պակսեցուցեր են .
« ըրած թարգմանութիւնին ունեցած մոլեկան
« գաղափարներուն եւ կարծիքներուն համա-
« ձայնեցընելով . եւ երթալով պիտի աղաւա-
« ղեն բոլոր սուրբ գիրքը , եւ այս Վօլթէ-
« ռի եւ Վոլնէի ունեցած անկրօնութեան գա-
« ղափարներն պիտի յայտնեն ”: ( Բնդդիմախ . էջ .
11 ) : Ինչպէս որ վերը Լուտերը արդարացը-նելը հոգ չըրաւ . որովհետեւ գիտէր որ այն աղանդապետին գիրքերը . մանաւանդ անդանք խօսքեր ( Պինչ Բիէրըն ) անուանեալ գիրքը եւ անոնցները կարդացողները զինքը սուտ պիտի

Հանէքին, հոս ալ իրենց, աստուածաշունչէ թարգմանութիւնները որդաքացընել հոգ չը-նէր. եւ սոր ալ պատճառը նմանօրինակ կը կարծեմք. որովհետեւ Եւրոպայի գործածական լեզուներու թարգմանած աստուածաշունչներուն համար շատ դատախազներ ելան եւ անհաւատարիմ ըլլալը վկայեցին նոյն իսկ բողոքականներուն մէջէն ալ: Սակայն շատ ժամանակ կայ որ հայերէնը աշխարհաբարի եւ տաճկերէն լեզուի թարգմանելով հայու գրով տըպուած աստուածաշունչներնուն համար կըսեն որ թէ որ մէկ սխալ մը ունի նէ ցուցուցէք. եւ մինչեւ այս օրըս մարդ հոգ չէ ըրած ցուցընելու. գիտնալով որ ցուցնելէն ետքն ալ բնաւ չառնածի պէս նորէն նոյն քողըքը պիտի ընեն թէ սխալ ունիմք նէ ցուցուցէք: Հոս խօսքին կարգը գալով քանի մը անհաւատարիմութիւններին ցուցընելու պատշաճ դատեցինք. չէ թէ անոնք յաղթելու համար, այլ ուղղափառ քրիստոնէից ցուցընելու համար թէ անոնց թարգմանութեանը վստահիլ չըլլար:

Մեր ցուցընելիքներուն քով բան մը ըսել չէ սրբազան կաթուղիկոսին ցուցուցածը (քաղէ ժողվ. եր. 119). որ սուրբ գրոց հայերէն թարգմանութեան մէջ գրածը, " փըրկեաց յերեսս նորա շունչ կենդանի". թարգմաներ են, " անոր քթին ծակերուն փչեց շունչ " կենդանութեան" (Ծննդ. Բ. 7). Բ

մը ըսել չէ կըսեմ . որովհետեւ անիկայ պատրուակելու համար կըսեն : Թէ՛ երբայական բնագրին մէջ ինչպէս գտանք նէ՛ այնպէս ենք թարգմանած : Բայց մէջ սա միայն կայ որ ♦ը-ըէն ձուկը ըսելուն տեղը երեւը ըսելնին սուրբ գրոց խօսքը չէր աւրեր . եւ հասարակութեան միջին ալ գայթակղութիւն չէր տար , որ իր կարծածէն աւելի տեղեակ են սուրբ գրոց եւ իրենց սովորական եղած սուրբ գրոց զը-րուցածքէն զատ բան մը լսեն նէ կը գայթակղին : Որքան ժամանակէ 'ի վեր որ եօթանասնից թարգմանութիւնը յարգի է թէ հըրէից եւ թէ քրիստոնէից մէջ . մէկը չէ եղած որ երբայականին մէջ ♦ըէն ձուկերը նշանակող բառերը եօթանասուն թարգմանիչները երեւը թարգմանած ըլլալնուն համար պախարակէ : Այն մարդիկն ալ երբայերէն գիտէին . եւ հիմակուան երբայեցի չեղող թարգմաններէն աղէկ : ♦ըլեւոց յերեւա Նոքա թարգմանելը ♦ըլեւոց յըսըն♦ան. Նորա թարգմանելէն աւելի պատշաճ տեսեր են . Նոր թարգմանները այս պատշաճութիւնը չեն ճանչցեր . եւ անոր համար գովելի չեն : Ուրիշ անհաւատարմութիւններն պատրուակելու այսպէս բան մը չունին : անոր համար աւելի պարսաւելի են :

Նոր կտակարանը աշխարհաբարի ալ թարգմանած են բողոքականները . տաճկերէնի ալ . կուքին համար ալ կըսեն թէ յունարէնէն են .

Երբ ասոնց մէջ տարբերութիւն ըլլայ ինչ ըսենք. մանաւանդ երբ այս տարբերութիւնըն ալ ուղղափառներուն ու բողոքականներուն իրարմէ տարբեր հասկցած կրօնական նիւթի մը վրայ ըլլայ. Այս բանիս վրայ բողոքականներն իմացուցած են որ իրենց մէջ կը գըտնուին աստուածաշունչին խօսքը իրենց մտածուոր կարծիքին յարմարցընելով թարգմանողներ. Ամերիկեան Պօրտ ըսուած ընկերութեան 35 երորդ տարւոյն տարեգիրը 1844ին տըպուած է Ամերիկայի Պօստըն քաղաքը. որուն առաջին յաւելուածին մէջ Հայոց եւ Կոստանդնուպօլսի Հրէից լեզուով տպուած աստուածաշունչներուն վրայ. տեղեկութիւն տալով ասանց կարգը 16 երորդ կը դնէ Նոր կտակարանի Հայերէն աշխարհաբար թարգմանութեամբ Կալկաթայի տպագրութիւնը. եւ կըսէ թէ Ամերիկայի մկրտողները արած են, եւ մկրտութեան վրայօք իրենց մասնաւոր տեղեկութիւններուն յարմարցուցած են*. Ահա բողոքականներու մէկ վկայութիւն մը բողոքականներու համար, որ սուրբ գիրքը կաւրեն եւ իրենց մասնաւոր կարծիքներուն կը յարմարմարցընեն եղեր. Իսկ թէպէտ խելքս չկըտրեր որ այն-

* *The New Testament* alered by the Baptists of America, and adapted to their peculiar notions of batism; published at Calcutta.

պէս նախապաշարեալ մարդ գտնուի, որ Իզ-միր եւ Կոստանդնուպօլիս սուրբ գրոց թարգ-մանութեան աշխատողները Եւրոպա աշխատող անգ[illegible]ի միջնորդներէն աւելի հաւատարիմ թարգ[illegible]ն կարծէ*։ Բայց մենք առանց այլ թարգմանութեննէն քանի մի օրինակներ բերելը հարկ կը սեպեմք։

Սուրբ աւետարանին «Եթէ ոչ ոք ծնցի «վերստին» խօսքը (Յովհ. Գ. 3), 1842 ին Իզմիր տպուած աշխարհաբար աւետարա-նին մէջ թարգմաներ են. «Թէ որ մէկ մարդ «մը նորէն չծնի», 1843 ին տպուած տաճկե-րէն աւետարանին եւ 1845 ին տպուած եբրայե-ցերէն անուն տետրակին մէջ, (Եր. 86) կը թարգմանեն. էկէր պիր «քիմսէ եէքօրըտան տօղմազըսա»։ Ասիկայ սխալ չէ ըսողը ըսել կու-զէ որ անօթէն յունական բառը որ սուրբ աւե-տարանչին գործածածն է. գրաբար հայերէնի թարգմանուի նէ վերստին, եւ աշխարհաբարի թարգմանուի նէ նորէն կըլլայ. իսկ տաճկերէնի

* Մօտերս մեր տպարանէն տետրակ մը հրատա-րակուեցաւ Նոր աշխարհին առաքեալները խորագրով. ո-րուն մէջ կը տեսնեմք որ Պրոտ ըսուած բողոքա-կանները Տաճկաստան եւ մինչեւ Կոստանդնուպօ-լիս ալ մտած են իրենց աղանդը քարոզելու. յայտ-նի է որ՝ աւետարանին իրենց ըրած թարգմանութիւ-նովը։

ալ բաղդատականները էջերէր կը թարգմանեն . թէև-
պէս որ վերը տեսանք . բայց Տիմոթէոս՝ տեղը
առաքեալին նամակը գրած ատենը արդէն երեց
ձեռնադրուած ալ էր նէ՝ ծեր չէր . երիտասարդ-
քումեղու հասկնալ դեռ չհասած կերեւի . վասն
զի սուրբ առաքեալը այս խօսքէն միայն երիտա-
սուն առաջ՝ մի՛ ոք զքո մանկութիւնդ „ արհա-
„ մարհիցէ „ ըսեր էր ։ Նոյն այդ թարգմանու-
թիւնը խեր չէր ըներ . վասն զի 12 տունը թարգ-
մանելով “ Հիչ քիմսէ սէնին կէնճլիյինի խոր
„ կէօրմէսին „ թարգմանելէն ետքը 14 տունը
“ իխմալ արլըղա նասըպ օլունտուղունուն „ թարգ-
մանելը գէշ կուգար . սրիշ կերպի դարձուցին ։
Ս՝ ալթայի թարգմանը ըսա . “ իխթիյար եեր-
„ նէկին էլլէրինին իւսթ գօնուլմասըյլը սանա
„ պիր փէյղամպերլիքըլէ վերիլմիշ օլը „ ։ Իօի-
կայ իգմիրու թարգմանն ալ 'ի հարկէ աղէկ մը
չըհասկընալով՝ իր թարգմանութիւնը այսպէս ը-
րեր է . “ իխթիար ճէմաաթընըն էլլէր [գօմասը
„ իլէ փէյղամպերլիյին վասըդասըյլը սանա վէ-]
„ րիլէն ւէնտէ օլան պախշիշէ իհմալ էթմէ „ ։
Աշխարհաբարի ալ նոյն մաօք թարգմանած են .
“ մի անհոգ ըլլար քու վրադ եղած շնորհքէնե-
“ րուն վրայով, որ մարգարէութիւնով քեզի
“ տրվեցաւ երեցներէն որ ձեռնադրըվեցար” ։
Բայց գրաբարը 'ի յձեռնադրութենէ երիցութեան է ,
եւ թէ որ միտքը այս նոր թարգմաններ-
հասկըցուցածին պէս ըլլար նէ ըսելու է

՚ի յետոյ գնելոյ ժողովոյ երիցանց , կամ ՚ի ձեռնադրութենէ երիցանց Առաքելական թարգմանները կուզեն այսպէս թարգմանելով քահանայութեան ձեռնադրութեան յիշատակը վերցընել . բայց իրենց խորհուրդը ուրիշ երկու բան կայ . Մէկ մը որ Տիմոթէոս աստիճանաւ երեցներէն վեր էր . որովհետեւ անոնք դատելու իշխանութիւն ունէր . որուն համար սուրբ առաքեալը խրատ կուտայ թէ « Զերիցու չա- « րախօսութիւն մի ընդունիցիս , բայց եթէ « երկուք կամ երիւք վկայիւք . (Ա. Տիմ. Ե. 19) : Իսկ որ հոս երէց բառը ծերունի կը նշանակէ նէ երիտասարդ մը կամ մանաւանդ մանուկ մը ծերերու վրայ դատաւոր դնել , եւ անոնք դատելու կերպ սովրեցընել , անպատեհ բան է . Եւ արդեօք երիտասարդները պիտի չդատէին , կամ անոնց համար առանց վկայի ամբաստանութիւն մտիկ պիտի ընէր , որ սուրբ առաքեալը ասոր վրայ չխօսիր . Եւ երկրորդ արմաթէաս ինքը երէցներէն ձեռնադրուեցանէ ինչպէս կըլլայ որ ինքը մինակ ուրիշի վրայ ձեռք կը դնէ . եւ սուրբ առաքեալն ասիկայ պիտանալով չըսեր որ երէցներ ժողվէ եւ ըսէ որ անոնք վրան ձեռք դնեն . որովհետեւ ինքը տակաւին երեց չէ , մանուկ է այլ միայն ձեռք դըրածներուն մեղքին հաղորդ ըլլալու եղանակը կը սովրեցընէ . « Ձեռս վաղվաղակի ուրուք վերայ մի դնիցես ; եւ մի կցորդ լի-

„Նիցիս մեղայ օտարաց„ (Ա. Տիմոթ. Ե. 22)։ Եւ այսպէս՝ հոս ալ խարդախ թարգմանութիւննին օգուտ չըրաւ։ Ուրիշ մէկ երկու ծուռ թարգմանութիւննին ալ գրոց մէջ ուրիշ տեղ յիշած ըլլալով հոս կրկնել չուզեցի։ Եւ այս մէկ քանի հատը որ հոս ցուցուցի՝ մինակ Նոր կտակարանէն են. եւ ասոնցմէ զատ չկայ չկարծուի։ Հին կտակարանի ծուռ թարգմանութիւնները եբրայականի քաջահմուտ եղողներուն կը թողումք։ Եւ մենք այսքանս բաւական կըսեպենք ցուցընելու որ սըրբազան կաթուղիկոսին խօսքը՝ թէ բողոքականները աստուածաշունչը ծուռ թարգմաներ են. ունեցած մոլորական գաղափարներնուն եւ կարծիքներնուն համաձայնեցընելով, բողոքականները զրպարտել չէ։

## Հ. 6

Զրպարտութիւն է ըսեր սրբազան կաթուղիկոսը բողոքականանաց համար, թէ կըքարոզեն որ, "եթէ մեր վարդապետութեանը չհե„տեւիս, կորուստ են„։ (Էջէ Մարդ. եր. 40)։ Ասիկայ մեր վրայ զրպարտութիւն է ըսելնին՝ ասանկ բան չեմք ըսեր ըսել է. որկէց անմիջապէս կը հետեւի որ՝ ասոր հակառակը կըսեն իրենք։ Այսինքն՝ մեր վարդապետութեանը չհետեւողներն ալ փրկութիւն ունին, կորուստ չեն կըսեն եղեր։ Ինչ որ յիրաւի այդպէս է նէ՝ պէ

էր որ անշերնին հանդարտ նստէին ։ իրենց վարդապետութիւնը քարոզելու համար Ամերիկայէն մինչեւ հոս չգային ։ Մէկ ազգի մը՝ որ աւետարան ունի եւ կը կարդայ եւ կը հասկընայ, եւ չըհասկըցածներն ալ հասկըցընելու օրինաւոր կերպով եւ հեղինակութեամբ որոշուած մարդ ունի. մէջերնին մտնել եւ քարոզել ուզող բողոքականը ի՞նչ կը քարոզէ. եթէ ո՛չ՝ իրեն վարդապետութիւնը. ուրեմն՝ թէ որ բերնով ասանկ չեն ըսեր նէ՝ գործքերնուն այս կը հետեւի. եւ թէ որ զրպարտութիւնէնէ՝ իրենք իրենց գործքովը այս զրպարտութեան ենթակայ եղեր են. մարդ յանցանք չունի ։

## Հ. Դ

« Մ՛եր ժողովքին անդամ չեղողները փըր- « կութիւն չունին՝ կորուստ են » ըսած չունին եղեր բողոքականները ։ (Ընդդիմախ. Եր. 40). եւ սրբազանը ասանկ կըսեն ըսելով զիրենք կը զըրպարտէ եղեր, կըսէ հակառակորդը ։ բայց կըրնա՞յ արդեօք երաշխաւոր ըլլալ թէ բնաւ մէկ բողոքական մը այդ խօսքը ըսած չունի ։ Աղէկ գիտեմ որ մէկը մէկալին հաւատքին անգամ երաշխաւոր չկրնար ըլլալ. ուստի հակառակորդը սըրբազանին այս խօսքը զրպարտութիւն անուանելէն աղէկ կընէր, թէ որ պատասխանէր թէ՝ այդպիսի խօսք ես չեմ ըսեր. ուրիշ ըսող կայ նէ ըսէ-

դէմ. եւ այսպէս խօսքը որ՛ն է, նէ՝ պատա-խանատուութիւնն ալ անոր վրայ ձգեր ։

§. 8

Սրբազանին մէկ զըրպարտութիւնն ալ այն է եղեր. որ ըսեր է թէ կըսեն որ "Քրիստոս մեր ,, մէջն է. քրիստոսով կը խօսինք, աւետարանը կը ,, քարոզենք. աւետարանի ճշմարտութիւնը մեզի ,, յայտնուած է ,,։ (Յուղէ ծոցը. եր 38. Ընդդի-մախ. եր. 41. Նոր ալ պատասխանը, (Չ. 6) Թուղթն տուածնիս է. սանկ բան ըսած չեն նէ՝ գործքերնին այնպէս կը ցուցընէ որ մտքերնուն մէջ սանկ դրած են ։ Գործքերնին եւ վարմունքնին իրենց ըսելու խօսքին յարմարցընեն նէ՝ զըր-պարտող չեն ուրանար ։ Նմանապէս կը պատա-խանեմք սրբազանին ուրիշ խօսքերուն համար զըրպարտութիւն է ըսելնուն ։

§. 9

Սրբազան կաթուղիկոսը բողոքականներուն մէջ հաւատոյ միութիւն չըլլենալը եւ տեսակ տե-սակ աղանդներու բաժնուելնին կը պատմէ ։ Ա-սոր վրայ հակառակորդը չըսեր թէ անիրաւա-նութիւն կամ զըրպարտութիւն է, ըսածն ստոյգ ըլլալը կը խոստովանի, եւ այնպէս ըլլալն ալ կարդարացընէ. բայց աւաղ սրբազանին եկեղե-

ցական պատմութիւն չգիտնալը երեւը կուտայ։ Մ՛ենք առաջ տեսնենք թէ ի՞նչ է այդ չգիտցածը. եւ անկէց ետքը նայինք թէ ի՞նչ փաստով իրենց մէջ միութիւն չկենալը կարդարացընեն։

Նախ՝ Սրբազանին եկեղեցական պատմութիւն չգիտնալուն վրայ կը խօսիմ։ "Բողոքա-
,, կաններուն մէջ եղած հերձուածներուն մասին
,, տուած ցուցակին մէջ խորին անգիտութիւն մը
,, կերեւցընէ եկեղեցական պատմութեան վերայ։
,, Հին յունաց եւ հռոմէականաց աղանդներ
,, խառներ է նորերուն հետ միատեղ։ Օրինակի
,, աղանդաւ Նեստորեան. Ե կամ Զ. դարու աղանդ
,, մը որ ատեն ատեն երեւան կելլէր, շատ ան-
,, գամ հռոմէականաց մէջ։ Յանսենիստ ըսեր է. որ
,, կարծենք թէ 12րդ դարու Վալտէնսեանք են։
,, Միթոթիսթք եւ Ուեզլեանք մի եւ նոյն են.
,, Անտիփէտոանք Լեթիթիւտինեանք եւ Իրվինկ-
,, ռանեանք բնաւին աղանդներ չեն, ածական-
,, ներ են որ ո՛ եւ իցէ աղանդէ մարդոց կը տըր-
,, ուին, որոնք որ այս ինչ գաղափարներուն տէր
,, են։ Ինտէփէնտանդք՝ Փիւրիթանք եւ Քօն-
,, կրիկասիոնալիսդք ամէնը մէկ բան են,,։ (Ընդ-
դիմախ. էջ. 98)։

Կը տեսնեմք՝ որ սրբազանին եկեղեցական պատմութիւն չգիտնալը՝ այս աղանդներուն վրայ աղէկ տեղեկութիւն չունենալուն վրայ է եղեր։ Մ՛ենք հոս պիտի տեսնենք որ հակառակորդը նըն այս մասին գոնէ սրբազան կաթուղիկոսին

քաղաքը 1626 թուին. Օրլէանի քարոզիչ եղաւ 1650ին. եւ մեռաւ 1685ին. Նոր աղանդն այն էր՝ որ շնորհք կանուանէր աւետարանի քարոզութիւնը. իսկ Հոգւոյն սրբոյ ներգործութիւնք եւ ազդեցութիւնը մարդոյս հոգւոյն վրայ՝ որ էքուն շնորհք ըսուածը, չէր ճանչնար. Ժիւրիէօ կալվինականը սոր հակառակեցաւ եւ քանի մի ժողովքներու մէջ դատապարտել ալ տուաւ. բայց հետեւողները որ Պաժոնեան ըսուեցան, այն ժողովքներուն վրայ զիրենք դատապարտելու իշխանութիւն մը չտեսնելով իրենց գիտցածնին ետ չկեցան. Ըսել է որ ասոնք Պէլագեան էին. վասն զի հակառակորդը կըսէ թէ "պելագեանք „ կուրանան շնորհաց ազդեցութիւնը կամքին վրայ „ (Ընդդիմախ. եր. 14). եւ ահա՛ բաժանին ըսածըն ալ նոյնն է։

Բայց Պաժոնեան ըսելով հակառակորդը Կալվինեանները հասկընայ նէ՝ այն աղանդն ալ բողոքականներէն հեռու չէ՛ վարդապետութեամբ. միայն ժամանակով առաջ է. Նոյնք Սոսինեա եւ Արմինուա աղանդներէն ծագած էին. եւ բողոքականները ասոնք իրենց նախահայր կընդունին Դասանաբնաւ Պոլրոյէրի գրքին մէջ. (եր. 59. տպ. Իզմիր 1838) իսկ Վիլէրի Ռէֆորմէի գրքին մէջ (եր. 146—149. 182). Արմինուաններն ու Սոսինեանները մէկ կըսեպեն եւ մեծ գովութեամբ կը խօսին. թէպէտ ասոնք ալ հին մանիքեցինէրէն. Ասոնց մոլորութիւնն էր սուրբ Երրոր-

դութիւնն ուրանալը եւ զՔրիստոս տէրն մեր լոկ մարդ սեպելը։ Այս աղանդը բողոքականներուն մէջ հիմայ ալ կայ. Սոկինեան եւ Անդիդրինիդէր անունով. Հրէական ծէսերուն ալ մէկ քանին պահելը հարկաւոր կը սեպէին. անոր համար կը թլփատուէին. Այս չկայ հիմայ բողոքականաց մէջ. կամ թէ կայ ալ նէ չեմք լսած. (վասն զի անոնց մէջ ինչ եւ իցէ աղանդոյ համար վճռական չեմք կրնար ըսել թէ չկայ. գուցէ կայ եւ մենք չեմք լսած). բայց [illegible] բողոքականներուն մէջ կան որ կիրակիի տեղ շաբաթը կը պահեն. եւ են Սէվըն տէյ պէպթիսթ ըսուածները. այսինքն՝ եօթներորդ օրուան մկրտող։ Այսու ամենայնիւ բաժանեանը զատ աղանդ է բողոքականութեան մէջ։

Հակառակորդը կըսէ թէ մեթոտիստներն ու վէզլեաններն մէկ են։ Մենք կըսեմք թէ մի եւ նոյն մէթօտիսթ անունին տակը երկու տարբեր աղանդ կը պարունակի. եւ սրբազան կաթուղիկոսը մեթօտիստ անունը Հուայդֆիլտին հետեւողներուն տալով Ուէզլէին անունը միւս մեթօտիստներուն ալ ուաւ որ Ուէզլէին կը հետեւէին։ Հուայդֆիլտ (Whitefield) ճիշդ կալվինական էր. կալվին ինչ քարոզած էր նէ անկէց չէր զատուեր. մարդոյս անձնիշխանութիւնը կուրանար. բարեգործութեան օգուտը կուրանար. Աստուած ուղղակի մեղաց պատճառ կը դնէր. մէկ մարդ մը թէ որ յարքայութեան սահմանուած ըլլայ նէ՝ ինչ մեղք գործէ ալ

արքայութիւն կերթայ կըսեր․ Նմանապէս մէկ մարդ մը սկիզբէն Աստուծմէ դժոխքի դատապարտուած ըլլայ նէ՝ ինչ բարեգործութիւն, եւ ո՛րքան կենդանի հաւատք ունի նէ խեր չըներ դըժոխք կերթայ կըսէր։ Իսկ Ուէզլէյ կըսէր թէ մարդ ինքնին կրնայ արքայութեան արժանի ըլլալ իր ազատ կամքով․ եւ միայն հաւատքով կարդարանայ․ որով առաջին խօսքովը պեղագեան, եւ երկրորդովը լութերական կըլլայ։ Հուայդֆիլտ եկեղեցական կարգ չէր ճանչնար․ Թէպէտ ինքը անկլիքան եկեղեցւոյ, մէջ քահանայ ալ ձեռնադրուած էր, 1739ին․ իսկ Ուէզլէյ՝ եպիսկոպոսութիւնը ուրիշ եկեղեցական աստիճաններէ վեր կը բռնէր։ Ասոնց երկուքին ալ հետեւողները մէթոտիստ ըսուեցան նէ՝ ի՞նչպէս երկու հակառակ կարծիք սովրեցընող աղանդները մէկ կ՚ըլլան։ Կըներեմք հակառակորդին որ մէթոտիստները ու ուէզլէյեանները անոնցմէ մէկ ըսէ․ բայց ատոր փոխարէն կուզեմք որ՝ ասոնք երկուքը իրարմէ տարբեր՝ եւ իրօք երկու աղանդ դնող սրբազանը եկեղեցական պատմութեան անհմուտ է ըսէ։

Ինտիֆէրան, լէթիթիւտինէր եւ թոլէրանտեան՝ աղանդ չեն կըսէ, ածականներ են․ բայց աղանդներուն անուններն ալ մարդոց վրայ դըրուին նէ ածական կերպով կը դրուին․ ուստի այդ բառերուն ածական ըլլալը աղանդ ըլլալուն բնաւ վընաս չունի․ Մի եւ նոյն բառը կըրնայ միանգա-

մայն աղանդոյ անուն ածական ըլլալ. Հաւատար
նէ իրեն քերականութիւն դաս տուող փորձա-
պետին թող հարցընէ ։

Աղանդները մէկ մէկ գաղափար են. բայց
ծուռ՝ եւ սուրբ գրոց եւ սուրբ եկեղեցւոյ սով-
րեցուցածին հակառակ գաղափար ։ Ասոր այս
ածականները այս ինչ գաղափարներուն տէր ե-
ղողներուն տրուին ու աղանդ ըլլալուն տպա-
ցոյց չէ՛ ։ Լադիդիւտինէրներուն գաղափարն է՝
որ մէկ մարդ մը եւ սուրբ գրոց կը հաւատամ
ըսելէն ետքը ի՛նչ բանի կը հաւատայ նէ փրկը-
կութեան ճամբուն մէջն է. որով ամէն տեսակ
հերետիկոս՝ փրկութեան ճամբու մէջ կը դնէ ։
Ինտիֆէրանը՝ ամէն տեսակ հաւատք՝ թէ եւ ի-
րարու հակառակին, մէկ կը բռնէ. եւ հաւատքը
շիտակ կամ ծուռ ըլլալուն ու հոգ չտանիր ..սուրբ
գրքի ու խօսք չըներ ։ Թոլէռանեանը ամէն ա-
ղանդոյ մարդիկ իրեն հաղորդութեան կընդունի
եւ իր կրօնական ժողովքին անդամ կառնէ ։ Ա-
սոնց աղանդ ըլլալն ընդունէր՝ եւ երեքը մէկ ա-
ղանդ է ըսեր նէ՝ բան չէինք ըսեր. միայն կը
հարցընէինք իրեն թէ մի եւ նոյն աղանդին՝ թէ
որ մէջերնին տարբերութիւն մը չկայ նէ՝ ինչու
զատ անուն դրեր են. վասն զի այս անուննե-
րը դնողը սրբազան կաթուղիկոսը չէ՛ ։ Նոյն
հիմայ կը հարցընեմք. այն գաղափարները որոնք
ունեցողներուն այս ածականները կը տրուին՝ հա-
ւատոյ եւ քրիստոնէութեան կը վերաբերի՞ն թէ չէ՞

Բայց դուն ը՛նթերցող, հոս տեսնելով որ Էնտիքիեան եւ Լաթիլթիւտինէր եւ Թոլէրանսեան բառերուն ածական ըլլալը ճանչցեր է. չըկարծես որ ամէն բառերուն ածականը գոյականը ալէկ կը ճանչնայ։ Վերոգրեալ խօսքերէն քիչ մը վար երթալով սա խօսքը կը գտնեմք. “արդէն ցուցըրած ենք՝ թէ ինքը անձամբ չորս „ու հինգ ալանդ է„ (Ընդդիմախ. եր. 98)։ Մ՛արդը ի՞նչպէս ալանդ կըլլայ. բայց եթէ երբ հակառակորդին պէս մէկը ալանդ գոյական բառը ածականի դարձընէ. բայց սրբազան կաթուղիկոսին նկատմամբ նոյն բառը ինչի՞ որ դարձընէ պարապ է. անիկայ ո՛չ ալանդ է եւ ո՛չ ալանդաւոր, Նոյն թէ որ հակառակորդը խրատ մտիկ ընելու կը հաճի նէ՝ քերականութեան մէջ ածականի գոյականի դասը մէկ մը թող նորէն մտիկ ընէ։

Թարգմանութիւններուն համար ընդհանրապէս խօսելով կըսէ թէ “շատը ազգային թարգման„ներն են եւ ոչ թէ աստուածաբանական։ Լու„տերականք գերմանացւոց՝ հոլանտական վերանո„րոգեալ եկեղեցի՝ Սկովտիոյ փրէզպիտէրեանք „(երիցականք)՝ նոր Անգղիոյ փիւրիթանք եւ „շատ ուրիշ ասոնց նման անուններ կը վերաբերին „այլ եւ այլ ազգային թարգմանմանց„ (Ընդդիմախ. եր. 99)։ Ի՛նչ է որ ասանկ է նէ ի՛նչ հարկ էր այս ազգային թարգմանութիւններուն կրօնական կերպանք տալ։ Լըսուա՞ծ է արդեօք ըսել. Ըմի-

նայի յունադաւանք, Մօրէայի յունադաւանք, Կոստանդնուպօլսի յունադաւանք. Ռուսաստանի լուսաւորչականք. Հնդկաստանի կամ Ասորիայի լուսաւորչականք. եւ այլն. Հարկ չէ՝. վասն զի լուսաւորչական կամ յունադաւան ըսելով դաւանութիւնը եւ արարողութիւնը կը հասկըցուի։ գաւառ կամ ազգ տարբերելու կարօտութիւն չըկայ։ Բողոքականներունը անանկ չէ՝. մէկ ազգէ մէկալ ազգ թէ՛ 'ւ ամէնն ալ լուտերական կամ կալվինական ըլլան, հաւատոյ տարբերութիւն կայ։ Հելվետեան եւ բելգիական եւ անգլիքան եւ ուրիշ երկիրներու անուններով դաւանութիւնները իրարու չեն նմանիր. ասոնց մէջ աշխարհագրական բաժանումը կրօնական բաժանում ալ բերած է։ Նիմայեր անուն գերմանացի մը. բողոքական ազգերուն ամէն մէկուն դաւանութիւնները մէկ տեղ ժողվելով լատիներէն տըպած է 1840 թուին.* Թէ որ հակառակորդը կամք կընէ նէ այն գիրքը մէկ մը աչքէ անցընէ։ կը տեսնէ որ բողոքականներու մէջ ազգային բաժանմունքը միանգամայն աստուածաբանական բաժանմունք ալ են։ Մանաւանդ թէ՝ որովհետեւ ամէն մարդ աստուածաշունչ գիրքը պիտի կարդայ, եւ ինչպէս՛ հասկընայ նէ անանկ պիտի

* Մօտ ժամանակներս խմբագրանք ու հայերէն աշխարհաբար ալ այսպէս բան մը տպուած կայ Իզմիր.

թիւններուն՝ մէջ կան սոկինեանութիւն. միադա-ւանութիւն եւ ունիվէրսէլիստութիւն. ասոնք ալ բողոքականութեան մէջ մէկ ճիւղն են. եւ ասոնց՝ համար Հակառակորդը իր գրքին մէջ մէկ տեղ մը ըսաւ որ՝ ,,գրեթէ մի եւ նոյն բանին ,,տարբեր անուններն են. աս անունները կը-,,ցուցընեն պեղագեան հերետիկոսութեանը ,,հետեւողները,, (տես. եր. 17). եւ ուրիշ տեղ մը նոյն պեղագեան աղանդը Հոփքինզըրթեան ժողովուր-դեան անուանեց (տես. եր. 80). Հիմայ կը պար-ծի որ ամէն բողոքական, այս Հոգեկործան մո-լորութիւնը ունեցողներն ալ մէկ տեղ՝ կրօնական Աւետարանչականաց մէջ միաբանութեամբ կը գործեն եղեր. եւ ի՞նչ է գործերնին. հոգիները միաբա-նաջանամբ կործանե՞լը թէ միաբանութեամբ կանգ-նե՞լը. վասն զի թէ որ ոմանք կործանելու եւ ոմանք կանգնելու համար կարծես նէ՝ միաբանա-ջանամբ գործած չեն ըլլար։ Ու ի՞նչ ճամբայ գը-տեր են որ յիշեալ պեղագեանները հոգի չկոր-ծանեն. կամ թէ արդեօք ունիվերսէլիստը եւ միադաւանը եւ սոկինեանը պեղագեան աղանդը քարոզած տեղը հոգւոյ փրկարար վարդապետու-թիւն կըլլայ. եւ միայն մեր սրբազան կաթու-ղիկոսը մի եւ նոյն աղանդը հոգեկործան կընէ։

ոնէն միաբանելով,,։ (Նախագր. 41։ Տե՛ս Երեւակ հատ. Է, երես, 295)։

Ահա՛ այսպիսի բաներով է որ հակառակորդը իրենց մէջի կրօնական բաժանումները կարդարացընէ։ Եւ որպէս զի այսպիսի բաժանեալ կրօնական ընկերութիւն միայն բողոքականութիւնը չմնայ, կըսէ. "Եթէ հաւաքելու ըլլանք Հռովմ- ,, մէադաւան՝ յունադաւան եւ լուսաւորչադաւան ,, եկեղեցեաց նախնի այլ եւ այլ մասերուն ա- ,, ղանդներուն հերձուածներուն անունները, հա- ,, րիւրաւոր անուններու ցանկ մը կը շինուի,, (Անդ. Եր. 98)։ Սակայն բանը առանց անուններ ժողվելուն վրայ չէ՛. այն ցուցընելու է որ այդ յիշած եկեղեցիներուն մէջ այն աղանդաւորները ուղղափառներուն հետ մէկ տեղ եղբօր պէս միաբանութեամբ կը գործէի՞ն թէ չէ՛։ Եկեղեցին առաքեալներէն 'ի վեր հաստատութեամբ սովրած հաւատք մը ունի. անոր համաձայն քարոզողները իրենն են. չհամաձայնողները իր մէջը չընդունիր. նզովքով դուրս կը նետէ. եւ ասով առաքելական պատուէրը կը կատարէ. "Եթէ ոք ,, եկեսցէ առ ձեզ եւ զվարդապետութիւնս զայս ,, ո՛չ ունիցի՝ մի՛ ընդունիցիք զնա,, (Բ. Յովհ. 10)։ Բողոքականը իր մէջը պիտի ընդունի եւ պահէ. ուստի յիշեալ եկեղեցիներուն մէջէն հերետիկոսներ ելլեն. մէջը չեն մնար. բողոքականներուն մէջը կը ծագին հերետիկոսութիւնները եւ հոն կը մնան, եւ ամէնն ալ իրենց եղբայր [illegible] կը գործեն կրօնական ձեռնարկութեանց մէջ։ Մինչեւ որ չապացուցանեն որ յիշեալ

կեղեցիք. կամ որ նոյն է՝ սառնցմէ բաղկացեալ ընդհանուր եկեղեցին իր հին հաւատքը եւ ուղղափառութիւնը չկորսնցընելով այդ աղանդներն ալ իր մէջը կը պահէ առանց հերքելու, իրենց մէջի բաժանումներուն օրինակ ուղղափառաց մէջէն աղանդաւորներ ելլելը մէջ բերեն նէ՝ իրենց թիւր տրամաբանութեան օրինակ մըն ալ աւելցընելէն աւելի բան չեն ըներ։

Ուրիշ քանի մը բաներ ալ կան. որոնք զըրպարտութիւն չեն անուանած. ինչպէս ըսելը թէ ամէն մէկըդ հարուստ վաճառականի մը կենցաղավարութիւն ունիք. աշխարհի վայելչութենէն բնաւ հեռացած չէք. անկին մեալ չէք ուզեր. ապահով տեղուանք ծանրագին վարձքով գեղեցկաշէն տուներու մէջ բնակիլ կը խնդրէք. եւ այլըն. (Ընդդիմախօս. եր. 10. Բարէ ծուրը. եր. 49)։ Ասոնց դէմ բան մը չէ զրուցեր. սուտ է՝ զըրպարտութիւն է չէ ըսեր. ուստի մենք ալ ըսելիք մը չունիմք։

Միայն՝ ինչպէս որ կերեւի, իր ընթերցողները քիչ մը զուարթացընելու՝ եւ զինքն ալ հայերէնի քաջավարժ ցուցընելու մտքով՝ ուզեր է որ սրբազանը հայերէնի անհմուտ՝ եւ ողոռոզ բառին նշանակութիւնը չգիտցող ցուցընէ։ Ծանրագին վարձքով ողոռոզ տուներ կը խնդրէք ըսածին ողոռոզ բառին քով փարենթազիզով սա խօսքը դրեր է. «(ողոռոզ բառը կերեւնայ թէ հո-ւսսաւն. (հոսպոտար) բառին տեղը գործեր

,, է ),, ։ (Ընդդիմախ. եր. 10)։ Բայց իրեն սըխալ երեւցեր է ։ Գիտէ սրբազանը՝ որ տարի մը ամերիկացի քարոզիչները այ Սուէֆանոս գիւղն ալ նստան, որ այնքան հեռաւոր չէ՛, բայց աղանդ է. անհէ ազատ է։ Գիտէ որ այդ քարոզիչները Անգղիայի կամ Ամերիկայի դեսպան կամ հիւպատոս չեղած տեղերը չեն երթար։ Գիտէ որ թերպէս այդ քարոզիչներուն մէջ յառկապէս հըրեաններուն ։ քարոզելու որոշուած մարդ ալ կայ, բայց այլոց կամ խառ քեզ հրեաններու խաղմութիւն կանուած տեղերը տուն բռնած չունին. գուշկէ այն կողմերուն փողոցներէն ալ անցնիլ չեն ուզեր. վասն զի այն տեղերը իրենց համար ապահով չեն. այլ միշտ ահ ու դող կրելու պատճառ կայ։

Հակառակորդին առաջակին մէջէն շատ բաներ ետ թողուցինք. մէկ մասին համար յուսալով որ սրբազանը ինքնին կը պատասխանէ, եւ մենք պատասխան տալու արտօրալու պատճառ մը չունիմք. որովհետեւ հաւատոյ եւ եկեղեցւոյ վերաբերեալ բաներ չեն ։ Սրբազանին պատուոյն դպչելու բաներ ալ չեն, այլ դուրսէն բաներ են. որոց բնաւ պատասխան չտրուի ալ նէ կըլլայ։ Նոյ թողածներնուս մէկ մասն ալ այնպէս էին՝ որ գլխաւոր խնդրոյ մը կապուած

# Ը. Օ. Գ.

Գրքիս տառասխալներուն մէջէն միայն մէկ հատը կընշանակեմք հոս. որ է 137 երեսին Անգղիերէն ծանօթութեան մէջ alered բառը, որ altered պիտի ըլլայ. Հայերէնին մէջի տառասխալները կարդացողներուն ինքնին շիտկելու բաներ են.